# ՓԱԹԻԼՆԵՐ

Վ. ԴԱՎԹՅԱՆ

Ճերմակ, թեթև ու անհամար
Ձյան փաթիլներն իջնում են վար,
Իջնում, ծածկում դաշտ ու բլուր,
Իրար փարված, քնում են լուռ.
Քնում են լուռ ու երազում,
Գարնան գալուն են սպասում,

Որ արևի շողին փարվեն,
Նրա տաքուկ շնչից հալվեն,
Հալվեն, փոխվեն զուլալ ցողի.
Ծալքերի տակ մտնեն հողի
Ու մայր հողից
Դուրս գան նորից.
Մեկը դարձած մի ձնծաղիկ,
Մեկը՝ կապույտ մի մանուշակ,

Մեկը՝ ճերմակ ծնկածաղիկ,
Մեկը՝ նարգիզ, մեկը՝ շուշան։
Սակայն հիմա իջնում են վար,
Որ ցուրտ քամուց հողը պահեն.
Իսկ երբ բացվի գարունը վառ,
Ծաղիկ դառնան ու ծիծաղեն։

Նկ. Ռ. ՄԱՆՈՒԿՅԱՆԻ



Մեր պատշգամբի տակ վերջանում է քաղաքային գրոսայգին և սկսվում է նեղլիկ մի փողոց, որը դեռ անուն չունի։ Նամակների և հեռագրերի վրա սովորաբար գրված է լինում. «Աբովյան փողոց, երկրորդ նրբանցք, №1, այսինչ այսինչյանին»։ Նախ, ինչու՞ նրբանցք, երբ այստեղ են ապրում քաղաքի ամենանշանավոր մարդիկ՝ դերասան Խորենը, քարտաշ Սարոն, դերձակուհի Եվգինեն և մեքենավար Համբարձումը, որի մասին վերջերս բոլոր թերթերը գրեցին։ Եվ հետո, Աբովյան փողոցն ո՞ւր, այս ո՞ւր... Ամեն անգամ, երբ մտածում եմ, թե ինչ անուն կարելի է տալ մեր փողոցին, բացի «Համբարձումից», ուրիշ ոչինչ չեմ գտնում։ Ազնիվ խոսք, նա արժանի է դրան։ Հաճախ պատկերացնում եմ ինչպես է նա գիշեր-ցերեկ լեռներով, անտառներով ու դաշտերով քշում գնացքը քաղաքից-քաղաք, գյուղից-գյուղ, ավանից-ավան, և միշտ աշխարհը լցվում է սիրտս. կարծես մեքենավարը ես եմ։ Չգիտեմ ուրիշներն ինչպես, բայց ես հպարտանում եմ այս փողոցում գտնվող ամեն ինչի համար։

Հիմա ուշ գարուն է։ Ծառերը սվսվում են, թռչունները՝ դայլայլում, գույն-գույն ծաղիկները՝ բուրում։

Արդեն տասնմեկերորդ օրն է, ինչ մի տղա գրոսայգու ստվերոտ անկյունում կարմիր կազմով գիրք է կարդում։

Ես գրքեր շատ եմ կարդացել, բայց այդքան հաստ գիրք կյանքումս առաջին անգամ եմ տեսնում։ Մի շաբաթ է, գլուխս եմ ջարդում և ուզում եմ իմանալ՝ ի՞նչ է գրված դրա մեջ։ Սկզբում ինձ թվաց, թե պատերազմի նկարագրություն է, և ամբողջ մի օր վազեցի, պառկեցի, կրակեցի, վիրավորվեցի ու մեռա։ Հետո աչքերիս առաջ կանգնեցին ուրիշ տեսարաններ։ Ես լաց եղա, երբ եղջերուն որսորդի գնդակից ընկավ, վախեցա, երբ ծովը սկսեց ալեկոծվել, և ծիծաղեցի, երբ կրկեսի ծաղրածուն յոթ անգամ գլուխկոնծի

# ԵՍ, ՄՈՐԱՔՐՈՋՍ ՏՂԱՆ ԵՎ ՄԻ

Ն. ԱԴԱԼՅԱՆ

ԴԵԿՏԵՄԲԵՐ
№ 12 1962 Թ.





ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
34-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

տալուց հետո՝ լեզու հանեց։ Իսկ հիմա մտածում եմ, որ դրանք դատարկ բաներ են և գիրքը շատ ավելի հետաքրքիր բանի մասին է։

Ես նախանձում եմ այդ տղային։ Ես նախանձում եմ նրան ոչ թե ետ սանրված մազերի, մեծ քառակուսիներով վերնաշապիկի, ոսկեգույն շրջանակով ակնոցի և սրածայր կոշիկի համար, մի օր ես դրանք կունենամ, այլ այդ մեծ գրքի համար, որը նրան այդպես զբաղեցնում է։

Միայն կեսօրին նա մի պահ գրքից բարձրացնում է գլուխը, երբ իմ մորաքրոջ աղջիկ Սուսաննան համալսարանից տուն է վերադառնում։ Սկզբում նա այդ էլ չէր անում։ Վաղ առավոտից մինչև ուշ երեկո թերթում էր գրքի էջերը և կամ գլուխը ափերին հենած՝ խորասուզվում մտքերի մեջ։ Մի օր էլ Սուսաննան սովորականի նման նրա առջևից անցնելիս պատահաբար ձեռքից բաց թողեց երկար բռնակով սպիտակ պայուսակը և ամբողջ պարունակությունը թափեց գետնին. մեջտեղից ծալված տետր, կլոր հայելի, սրածայր մատիտ, սանր, ինքնահոս գրիչ, շրթնաներկ, ասեղնագործված եզրերով թաշկինակ, բանաստեղծությունների գրքույկ ու արծաթյա դրամներ։ Այդ աղմուկի վրա տղան բարձրացրեց աչքերը և տեսավ, որ մորաքրոջս աղջիկը աշխարհի ամենագեղեցիկ աղջիկն է։

Ես ուրախացա։ Մորաքրոջս աղջիկը շփոթվեց և, իրերն արագ հավաքելով, հեռացավ, իսկ տղան մինչև զբոսայգու ծայրը հայացքով ուղեկցեց նրան։

Ամեն կեսօրին ես հետաքրքրությունից պայթում եմ. անծանոթ տղան մի պահ ծալում է գիրքը և հուզված նայում նախ աջ, հետո ձախ, իսկ իմ մորաքրոջ աղջիկ Սուսաննան ոչ մի կողմ չի նայում, որովհետև ոչ ոք այնպես լավ չգիտե, որ նա աշխարհի ամենասիրուն աղջիկն է, ինչպես ինքը։

Այսօր անծանոթ տղան ավելի մտազբաղ է։ Նա արագ-արագ ետ ու առաջ է շրջում գրքի թերթերը և ծնկին դրված տետրի մեջ մատիտով նշումներ անում։ Առաջ նա այդ չէր անում։



Ինձ շատ են հետաքրքրում այդ նշումները և աստիճանաբար սկսում եմ հասկանալ, որ նրա ձեռքին ոչ թե հետաքրքրաշարժ մի պատմություն է, այլ՝ դասագիրք։ Ես կաշվից դուրս եմ գալիս և ուզում եմ իմանալ, թե դա հատկապես ինչ դասագիրք է, բայց ոչ մի կերպ չեմ կարողանում։

Ես սկսում եմ նրան առաջվանից ուժեղ նախանձել։ Վերջապես մխիթարվում եմ նրանով, որ շուտով զբոսայգում կհայտնվի մորաքրոջս աղջիկը և տղան գիրքը գոնե մի րոպեով կծածկի։ Այս միտքը ինձ հանկարծ այնքան է զվարթացնում, որ ես ափերով ամուր փակում եմ բերանս, որպեսզի բարձրաձայն չծիծաղեմ։

Ես միշտ էլ շատ եմ սիրել իմ մորաքրոջ աղջկան, իսկ հիմա ավելի շատ եմ սիրում։

Քիչ հետո ծառուղում երևում է Սուսաննան, և ես ակամայից թույլ մի ճիչ եմ արձակում։ Այսօր նա հագել է կապտա-մանուշակագույն և պարանոցից սպիտակ ուլունքաշար է կախել։ Որքան նա մոտենում է անծանոթ տղային, այնքան դանդաղեցնում է քայլերը։ Ես խորամանկորեն ժպտում եմ և հասկանում, որ նա այդ անում է, որպեսզի իրեն ավելի երկար նայեն։

Իմ սիրտը անհանգիստ տրոփում է, Սուսաննան ավելի է դանդաղեցնում քայլերը, իսկ անծանոթ տղան շարունակում է գրել։

Ես շնչահեղձ եմ լինում, թեև կանգնած եմ եր-

# ՂՋԻԿԸ, ԱՆԾԱՆՈԹ
# ՈՒԺ ՋՈՒՐ

Նկ. Ռ. ԱԴԱԼՅԱՆԻ

րորդ հարկի պատշգամբում. Սուսաննան շփոթված շուրջն է նայում՝ թեև պետք է չնայի, և անծանոթ տղան մի նոր էջ է բացում, թեև գիրքը փակելու ժամանակն է։

— Բարև՜, — անսպասելի բացականչում է մորաքրոջս աղջիկը և թափահարում ձեռքը։

— Բարև՜, — ասում եմ ես և մտածում, որ գոնե հիմա անծանոթ տղան կծածկի գիրքը և գլուխը կբարձրացնի։

— Ինչպե՞ս ես, — հարցնում է իմ մորաքրոջ աղջիկը։

— Լա՜վ եմ, — պատասխանում եմ ես և, անուշադրությունից վիրավորված նրա սիրտը սփոփելու համար, իմ հերթին հարցնում եմ.— Դու՞ ինչպես ես։

Նա առանց պատասխան տալու հեռանում է.



Ես տխրում եմ, և անծանոթ տղան ավելի է կռանում գրքի վրա։ Ես հասկանում եմ, որ նա պարզապես գլուխ բարձրացնելու ժամանակ չունի։ Այժմ ես նրան և՛ նախանձում եմ, և՛ սիրում։ Ես գիտեմ, թե ինչու եմ նախանձում; բայց բոլորովին չգիտեմ այս անակնկալ սիրո պատճառը։

Ես շատ եմ զղջում, որ մինչև հիմա որևէ ձևով աղմկել եմ, և ամուր բռնում եմ քիթս ու բերանս, որպեսզի սիրտս էլ կանգնեցնեմ, բայց այս մեկը անել ոչ մի կերպ չեմ կարողանում։ Թարթիչներս դողում են, և կոկորդս աստիճանաբար չորանում է։

Ես զգուշությամբ բացում եմ աչքերս և տեսնում, որ անծանոթ տղան ինչ-որ բան փնտրող մարդու հայացքով նայում է իր շուրջը։ Վազում եմ խոհանոց և աղբյուրի բերանից այնքան շատ ջուր եմ խմում, որ փորս դառնում է կաղամբաթթվի տակառի չափ։ Հետո արագ գտնում եմ տատիկիս կուժը, որը նա Աշտարակից է իր հետ բերել, և այն բերնեբերան լցնում եմ առատ սառեցնող ջրով։ Ոտքով խփված գնդակի նման ես աստիճաններով սուրում եմ ներքև, որովհետև ինձ թվում է, թե անծանոթ տղան ջուր է փնտրում։

Զբոսայգում ես զարմացած և շփոթված կանգ եմ առնում. կապույտ ներկով ներկված նստարանի վրա ոչ ոք չկա։ Կուժը միանգամից դատարկում եմ ինձ ամենամոտ գտնվող բարդու տակ և ուշադիր դիտում եմ՝ ինչպես է ջուրը պղպջակներ արձակելով ներծծվում։

Նստարանի ոտքերի մոտ թափված են եղունգից էլ փոքր թղթի կտորներ։ Ես կռանում եմ և բարձրացնում դրանցից համեմատաբար ամենամեծը, որի վրա մատիտով գրված է "$x^2 + y^2 =$"։

Կուժն ու թղթի կտորն առած՝ ես գլխիկոր բարձրանում եմ աստիճաններով։ Ես ոչ միայն չեմ կարող ասել ինչի է հավասար „$x^2 + y^2$", այլև չգիտեմ ինչ է նշանակում „$x$" և „$y$"։ Հանկարծ զգում եմ, որ շատ քիչ բան եմ հասկանում այս մեծ ու գեղեցիկ աշխարհից, և ուզում եմ լաց լինել։

Բայց լաց չեմ լինում, որովհետև ինձ հետ է մեր փողոցը, որն անուն չունի, մորաքրոջս աղջիկը, որն աշխարհում ամենագեղեցիկն է, և անծանոթ տղան, որը համառորեն գնում է ինչ-որ տեղ։

Նրանք ինձ հրապուրում են դեպի հեռավոր և կապույտ տարածությունները։

Նորից ելնում եմ պատշգամբ։ Աչքս ընկնում է բարդուն, որի տակ ջուր եմ լցրել։ Պատկերացնու՞մ եք, այս մի քանի րոպեի մեջ ծառը կարգին մեծացել է։ Ուռա՜... Ես էլ կմեծանամ և մի գեղեցիկ օր կբացեմ աշխարհի բոլոր գաղտնիքները։



ԱՐՏ. ՀՈՎԱԿԻՄՅԱՆ

Նկ. Է. Դ. ԶԱՔԱՐՅԱՆԻ

Հարավից տաք քամիներ փչում են միայն հունիսին։ Կղզում հանգստացողները պառկում են լճափի ավազին ու ամբողջ օրը տեսնում, թե ինչպես է լինում ափնակոծությունը, ինչպես են բաց լիճ ելնում զբոսանավերն ու նավակները, առագաստներն ուռեցրած մակույկները։ Այնուհետև լիճ են լցվում լողորդները։ Փրկարար օղակներով նրանք հասնում են մինչև լճի խորքը։ Առափնյա փրկիչ կայանը երբեմն ստիպված է լինում նրանց հետևից մոտորանավ ուղարկել։ Բայց այդպիսի դեպքեր շատ քիչ են պատահում։ Ամբողջ ժամանակ փրկիչ կայանի միակ տերը՝ Անաստասը, թիավարում է լճում և ձուկ որսում մի հին, կարկատած ուռկանով։ Որորներն ու ջրասարյակները նավողում են նրա շուրջը։

Այդ օրը նա լիճ չէր դուրս եկել. նրա փոխարեն հսկում էր Գոռը՝ իր տղան։ Մակույկը թեթևորեն լողում էր ջրի երեսին, և հարավ-արևելյան քամին նրան տանում էր լճափի ուղղությամբ։ Ամբողջ ճանապարհին տղան հանդիպում էր միայնակ նավակների և նրանց մեջ կռթնած ձախորդ տերերին, որոնք կարթաձողերով ձուկ էին բռնում։ Նրանք մեծ մասամբ տուրիստներ էին, այսպես ասած՝ ձկնորսություն սիրողներ, որոնք մեկ-երկու օրով լճափ էին գալիս զուտ այն նպատակով, որպեսզի բաց օդ դուրս գան և ձուկ բռնեն։ Նրանք երբեմն այնպես էին տարվում այդ գործով, որ չէին նկատում վրա հասնող անձրևն ու քամիները։ Տղան իր մակույկը սահեցնում էր նրանց մոտով և գոռում.

— Է՜յ, լիճը փոթորկվում է, հարկավոր է տուն գնալ։

Նրան ճանաչում և սիրում էին բոլորը։ Առողջ, լիքը մարմնով այդ տղան կղզի եկողների առաջին բարեկամն էր։ Նրա հայրը եկել էր լճի աջ ափից, սկզբում աշխատանքի էր անցել ձկնորսական մի նավի վրա ու տարիներ շարունակ եղել էր նավապետի օգնականը։ Բայց մի անգամ փոթորկի ժամանակ նավը ջրի տակ սուզվեց, և նա մեկընդմիշտ հրաժարվեց լիճ դուրս գալուց։ Այնուամենայնիվ, նա ամբողջ հոգով կապված էր լճի հետ։ Հենց դա էր պատճառը, որ նա ցանկություն հայտնեց աշխատելու փրկիչ կայանում։

Տղան հիշեց հորը. նա շուտ էր սկսել կռնծաքանել։ Տղան որոշ չափով հասկանում էր, որ հայրն արագորեն է ծերանում։ Նա այլևս չուներ նախկին առողջ, նավաստիական կազմվածքը։ Նա հազում էր, և նրա դեմքն ամբողջովին սփրթնում, քիչ էր մնում աչքերը դուրս թռչեն ակնակապիճներից։ Նա խղճում էր հորը։ Հայրը նրան լիճ էր տանում և սովորեցնում էր, թե ինչպես պետք է նետել ուռկանը, խիզախել, երբ մրրիկներ են լինում։ Այդ ժամանակ լիճն ասես շարժվում է համատարած. ահռելի բարձրությամբ ալիքներն իրար են գալիս վերևում և շառաչով փշրվում ընդամենը մի քանի քայլ այն կողմ։ Սկզբում նրան թվում էր, թե լիճը միանգամից կուլ կտա և՛ մակույկը, և՛ հորն ու իրեն։ Բայց հաջորդ վայրկյանին ալիքները ետ են քաշվում, ու մակույկն արագորեն լողում է առաջ։

Արևն ասես լիճն ընկավ։ Իրիկնադեմին շողերի միջից տղան կարողանում էր նշմարել առափնյա լեռնապարերը, մեծ ձկնորսական նավերը։ Նա նստած էր նավախելին, ճաղափայտերին հենված, մի ձեռքով բռնել էր ղեկը, մյուսը կախ էր ընկած։ Այդ ձեռքով խաղում էր ջրի հետ։ Տարվա այս եղանակին ջուրը միշտ տաք է լինում և միայն բռնում են կողակ։ «Որովհետև,— միշտ բացատրում էր հայրը,— իշխանը հիմա ջրի խորքն է ապրում և նրա որսը կատարվում է ձմռանը»։ Երբ թեթևակի ցնցվում էին կարթաձողերը, որ հագցված էր թիակների ագուցման տեղը, տղան շտապ վեր էր թռչում։ Նա բռնած ձուկը դատարկում էր տախտակամածին, հետո հավաքում, լցնում մի մեծ տոպրակի մեջ։ Իսկ երբ պարապ էր մնում, սկսում էր երգել մեծ ծովերի երգը, նավաստիական հին երգը, որ հայրն ամեն անգամ երգում էր բաց լիճ դուրս գալու ժամանակ.

Առագաստը բարձր պարզեք, տղե՜րք,

Այսօր ծովն ավելի հուզված է ու կատաղի։
Մենք բախտ ենք որոնում, մենք բախտ ենք որոնում։
Մեզ ուրիշ բաժին չկա։

Տղան նստարանի տակից հանեց կապոցը, նստարանի վրա փռեց երկու եփած ձուկ, մի քանի խաշած կարտոֆիլ ու բոքոն հացի մի մեծ կտոր։ Նա հացը կտրտեց իր հոր երկշեղբ դանակով, հետո սկսեց ուտել։ Երբ վերջացրեց, հավաքեց կապոցը ու նորից խցկեց նստարանի տակ։ Այնուհետև բաճկոնի գրպանից հանեց ջրի շիշն ու գլխին քաշեց։

Օրը մթնել էր, տղան որոշեց ետ դառնալ։ Նա հավաքեց կարթաձողերը, հետո իջեցրեց առագաստը, որովհետև՝ քամին այս անգամ փչում էր հակառակ կողմից։ Այժմ պետք է թիավարեր, իսկ այդ անելու համար բավականաչափ ուժ էր պետք։ Նա իջեցրեց թիակները, ջուրն անմիջապես փախավ տակից, և տղան թևերի մեջ ցավ զգաց։ Մենակ դժվար է թիավարել մակույկը, բայց տղան առաջին անգամ չէր, որ մենակ լիճ էր դուրս գալիս։

Մակույկը որոշակի ընթացք վերցրեց, տղան հիմա թիակներն ասես միայն թեթևակի խփում էր ջրին։ Տեղ-տեղ, երբ քամին նպաստավոր էր փչում, բարձրացնում էր առագաստը, բայց մեծ մասամբ թիավարում էր։ Նա չէր կարծում, որ այս ժամին ինքը միայնակ կլինի լճում և համոզված էր, որ իրենից մի քանի հարյուր քայլ այն կողմ ձկնորսներից շատերը դեռ ձուկ են որսում։

Լճի վրա սկսեց ուժեղ փչել քամին։ Իսկ քիչ անց, լսելի եղան լիճ թափվող անձրևի կտկտոցները։ Տղան չգիտեր որքանով է հեռու կղզուց, այնուամենայնիվ ենթադրում էր, որ քառասուն կիլոմետրից քիչ չի լինի։ Նա վախեցավ, որովհետև կարող էր հորդ անձրև սկսվել կամ փոթորկի պես որևէ բան և մակույկն անդառնալիորեն կանցներ լճի հատակը։



Լճից պարզորոշ երևում էին կղզու լույսերը, և տղան սկսեց ավելի համարձակ վարել մակույկը։ Նրա կուրծքն ու թևատակերը քրտնել էին, իսկ քամին անընդհատ հովհարում էր դեմքը։ Նրա մազերը թափվում էին ճակատին և ստիպված էր լինում մի ձեռքով հարդարել դրանք։

Տղան փորձեց երգել, բայց անձրևը հորդացավ, և նա սկսեց ավելի եռանդով թիակները խփել ջրին։ Նա լուրջ վտանգ զգաց, եղավ մի պահ, որ ուզեց կանչել, թե արդյոք մոտերքում մարդ չկա՞։ և անմիջապես հրաժարվեց այդ մտքից, որովհետև քամին սկսեց կողքից փչել ու մի կողմ շպրտել անձրևի կաթիլները։ Այնուամենայնիվ անձրևը սաստկանում էր։

Նա լաց եղավ։ Ի՞նչ են արդյոք մտածում կղզում։ Հայրը հիվանդ էր, և դժվար թե լիներ մեկը, որ նրա հետևից մոտորանավ ուղարկեր։ Գուցե նրանք չգիտեն, որ ինքը դեռ լճում է։ Տղան չէր ուզում ընկճվել, հայրը սովորեցրել էր այդպիսի դեպքում չշփոթվել, լինել սառնարյուն և միշտ սպասել հույսով։

Մակույկը արագորեն լողում էր։ Անձրևը երբեմն հորդանում էր միանգամից, երբեմն էլ քամին այն ցրում էր այս ու այն կողմ։

Կես ժամ նա լողում էր ապահով։ Երկնքի մի կողմն ասես պատռվել էր, և այդ ճեղքվածքից երևում էր լուսինը։ Լճի վրա բավականաչափ լույս կար։ Անձրևը համարյա թե կտրվեց։ Լիճը փայլում էր հարթ հայելու պես։ Տղան այժմ պարզել էր առագաստը։ Թևերը հոգնել էին, և նա սաստիկ ծարավ էր զգում։ Բաճկոնի գրպանում շոշափեց շիշը, բայց զգուշացավ ամբողջը խմելուց։ Միայն կում արեց։ Հետո սկսեց շփել մարմինը։ Թեթև լճային քամին զորացնում էր նրան։ Տղան սկսեց հաշվումներ անել, թե որքան ժամանակում կարող է կղզի հասնել։

Իրենից մի քանի կիլոմետր այն կողմ տղան որոշակի նկատում էր, թե ինչպիսի հորդահոսությամբ են կախվել անձրևի երկար պարանները։ Կղզում, ինչ խոսք, հիմա ջրհեղեղ է, իսկ ինքն ամեն վայրկյան լողում է դեպի անձրևը։

Նրան թվաց, թե ինչ-որ տեղից մոտորի ձայն

լսեց։ Երևի մոտորանավ են ուղարկել իր հետևից։ Տղան այլևս չէր վախենում։ Նրան չէին մտահոգում ո՛չ հորդահոս անձրևը, ո՛չ քամին, ո՛չ էլ բարձրացող ալիքը։ Նա սկսեց վեր-վեր թռչել նավակի մեջ։

— Է՜յ, ես այստեղ եմ,—բարձրաձայն կանչեց ու սկսեց ականջ դնել։

Բայց մարդկային ոչ մի ձայն։ Միայն նրան էին հասնում ալիքների շառաչը, քամու վզվզոցը։ Իսկ հեռվից տարածվում էին քամու բերանն ընկած գիշերահավերի ճիչերը։

Տղան հուսահատվեց։ Նա ընկավ նստարանին ու սկսեց տխուր նայել ջրին։ Մակույկն այժմ առաջվա արագությամբ չէր գնում։ Քամին փչում էր անկանոն. հաճախ էր պատահում, որ այն պտտվում էր տեղում կամ լողում էր մերթ աջ, մերթ ձախ։ Տղան բարկացած ծգեց առագաստը և սկսեց թիավարել։

Անձրևը նորից սկսվեց, սկսվեց ավելի հորդ ու կատաղի, քան տղան պատկերացնում էր, Լինեն անհանգիստ ետ ու առաջ էր շարժվում։ Հանկարծ ահռելի ալիքները միանգամից վեր խոյացան և թափով խփեցին մակույկի քթամասին։ Մակույկը ետ շպրտվեց. տղան բերանքսիվայր փռվեց տախտակամածին։ Երբ ալիքները ետ գնացին, մակույկն արագորեն ներքև իջավ։ Տղան կարծեց, թե խորտակվում է, սակայն մակույկն անմիջապես նորից վեր բարձրացավ, սկսեց նույն կերպ շարժվել՝ ալիքների քմահաճույքով։ Եվ ամեն անգամ, երբ ալիքը շառաչով իջնում էր, մակույկը կորչում էր ջրհեղեղի մեջ, ամեն րոպե լցվում անձրևաջրով ու լճի ջրով։ Տղան հասկացավ վտանգը, ջանաց մի կերպ ոտքի ելնել՝ բռնելով նաղափայտերից։ Առջևը մութ էր, ալիքները ահեղ թափով շարունակում էին խփվել մակույկին և նորից ետ փախչել։ Լինեն ահեղ ալեկոծվում էր, ու միայնակ մակույկը գլտորվում էր գլխապտույտ իրարանցման մեջ։ Այնուհետև սկսվեց փոթորիկը. քամիները ամեն կողմից փչում էին, ալիքները երկինք էին թռչում ու դարձյալ փշրվում լճի վրա։ Տղան մթան մեջ որոնեց ինչ-որ բան։ Գտավ։ Դա մի հին, ծոմռված դույլ էր, որ հայրը սովորություն ուներ պահել մակույկում։ Այնուհետև սկսեց մի տանջալից աշխատանք։ Տղան արագությամբ մի ձեռքով մակույկից դույլով ջուրը դուրս էր թափում, մյուսով ջանում էր ղեկավարել մակույկը՝ շրջանցելով վտանգավոր ալիքները։ Երբ անձրևը նորից հանդարտվեց, ալիքներն սկսեցին չափավոր հարվածել մակույկին, տղան հոգնաբեկ փռվեց նստարանին և ձեռքը տարավ ճակատը։ Ճակատը ցավում էր, ընկնելիս տախտակամածին էր խփել։ Նա էլ չէր թիավարում, մակույկն առաջանում էր դանդաղ. ալիքներն էին քշում։

Երկինքը պարզվեց, անձրևը բոլորովին դադարեց, և տղան առջևում նշմարեց կղզու լույսերը։ Սակայն դեռ լճեն ալիքներ էր շպրտում, որ անզոր խփվում էին մակույկի կողերին ու ետ փախչում։ Տղան գոհ էր. նա այդ անհավասար մարտում դուրս էր եկել հաղթանակած։ Նա հանդիսավոր կերպով թիավարում էր մակույկը ու նորից երգում մեծ ծովերի երգը։ Իսկ քիչ անց, լուսինը դուրս եկավ ամպի տակից՝ լվացված ու ներմակերես, և սկսեց իր կաթնաթույր շողերով լուսավորել և՛ լիճը, և՛ խիզախ թիավարին։

# ՀԵՔԻԱԹ ԱՆՀԱՄԲԵՐ ՏՂԱՅԻ ՈՒ ԿԱՐԵԼԱԿԱՆ ԴԱՀՈՒԿՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Նկ. Ալ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Կար ու չկար, մի տղա կար՝
Զարանենի ու անհամբեր.
Դպրոցից հենց վերադառնար,
Տունը կրակ նա կգցեր.
— Մայրի՛կ, հաց տուր,
— Դե շո՛ւտ արա,
— Մի բաժակ ջու՛ր,
— Արա՛գ, արա՛գ...

Հենց այդպես էլ արագ-արագ,
Ոտ ու ձեռը չլվացած,
Մի կտոր հաց, մի քիչ կարագ



Ուտում էր ու... սլանում ցած։
Շտապում էր ամեն բանում,
Կուլ էր տալիս բառը ծերից,
Ոչ ոք ոչինչ չէր հասկանում
Նրա գրած նամակներից։
Եթե նրան խոստանային
Երեկոյան մի տեղ տանել,
Ամբողջ օրը սպասումից
էլ չէր կարող ոչինչ անել։
Գիշերներն էլ հո քուն չուներ,
Վեր էր թռչում հազար անգամ.
Մի բաժակ ջուր խմելու էլ
Համբերություն չուներ անգամ։

...Կար ու չկար՝ ցավ ու կրակ
Մի տղա կար շատ անհամբեր...
Ու մի օր էլ հայրը նրան
Բերեց մի զույգ նոր դահուկներ։
Ի՜նչ դահուկներ՝ նկու՜ն-նկու՜ն,
Կոշիկներով իրենց հարմար,
Կապիչները պինդ ու փայլուն,
Երիզները՝ երկաթակար։
Ուր էլ խոսքով՝ կարելական
Լեռնավազքի նոր դահուկներ,
Զտեսնված բաներ... սակայն
Դրսում ո՛չ ձյուն կար, ո՛չ ձմեռ։
Դե տղան էլ տեղից կրակ,
Անհամբեր էր, գիտեք արդեն,
Դահուկները ուսին դրած՝
Այստեղ վազեց, վազեց այնտեղ
Եվ, երբ արդեն բոլորի մոտ
Դահուկներով իր պարծեցավ,
Ու առաջին հրճվանքը հորդ,
Ցնծությունը երբ որ անցավ,
Ուզեց սահել բլուրներից՝
Ականջները քամուն տված,
Բայց աշունն էր ոսկեդեղին
Գորգն իր փռել համատարած։
Եվ ամեն օր առավոտ վաղ
Տղան քնից վեր էր թռչում,
Դուրս էր վազում, սակայն, ավա՜ղ,
Շուրջը աշուն էր, խո՜ր աշուն։

Այսպես երկար սպասեց նա,
Համբերությունն հատավ մինչև.
Ու մի օր էլ ելավ գնաց,
Որ ձմռանը ինքը կանչե։
Գնաց, գնաց գիշեր ու զոր,
Անցավ անտառ, անցավ հովիտ,
Տեսավ գետեր արծաթազօծ
Ու լճակներ տեսավ թովիչ.
Իջավ կիրճերը մութ ու սև
Ճավիղներով նա բարձրացավ՝
Գագաթները ելավ թեթև
Ու լանջերով արագ անցավ,
Մինչև հասավ մի մեծ սարի՝
Լայնալանջ ու բարձրագագաթ,
Որ բազմել էր լեռնապարին՝
Ամբողջովին ճերմակ հագած։
Իսկ այդ սարի լանջի վրա
Ձմեռ Պապն էր հանգստանում,
Ոտքը անփույթ ոտքին դրած՝
Պաղպաղակ էր անուշ անում։
Հենց որ տեսավ մեր հերոսին,
Նա մոտ կանչեց, ասաց՝ «Արի՛,
Այդ ինչպե՞ս ես եկել հասել
Իմ հեռավոր բարձր սարին»։





— Եկել եմ ես, որ ձյուն տանեմ,
Ուզում եմ, որ լինի ձմեռ։
— Լա՛վ, քո ուզածը ես կանեմ,
Ես կծածկեմ անտառ ու լեռ
Ճերմակ ձյունով,
Գետը՝ սառցով,
Ճյուղ ու տերև՝
Պաղ եղյասով։
Գիշեր-ցերեկ ձյուն կթափեմ,
Ոսկի հագած ծեր անտառին,
Սառցե կամուրջ ես կկապեմ
Վերադարձիդ ճանապարհին...—
Ուրախացավ տղան իսկույն
Ու ցած նետվեց սարի լանջից,
Մինչդեռ Պապի ձայնը հուժկու
Հասնում էր դեռ իր ականջին.
— Զգու՜յշ եղիր, ո՞ւր ես վազում,
Շատ բան ունեմ դեռ ասելու...—
Սակայն էլ ու՜ր, ո՞ւմ ես ասում,
Համբերանք կա՞ր սպասելու։
Ճնչակտուր իջավ նա ձոր,
Հետո մտավ անտառը կից,
Այնինչ արդեն խոշոր-խոշոր
Ձյուն էր թափվում մութ երկնքից։
Դժվարացավ շատ տով ճամփան,
Ձյունը դարձավ մարդահասակ,
Ու շաբաթներ անցան մինչև
Տղան ճամփի կեսը հասավ։
Հայտնվեին հանկարծ եթե
Դահուկներն իր երկաթակար,
Կսլանար թեթև՜-թեթև՜
Հովի թևով տուն կգնար։
Ու թե լսեր լեռան լանջին
Ձմեռ Պապին նա մինչև վերջ,
Իրեն այսպես էլ չէր տանջի
Ու չէր ընկնի փորձանքի մեջ։
Բայց դե ճամփան երկար էր դեռ
Ու նա երկար գնար պիտի,
Եվ դեռ պիտի հաղթահարեր
Լեռնանցքներ ու կիրճեր մթին։
Եվ նա գնաց ու երբ մի օր
Հեռվում տեսավ տունն հայրենի,
Արդեն գարուն էր չորս բոլոր
Ու ծաղկել էր կեռասենին...
Կա ու չկա, մի տղա կա՝
Զարաճճի ու անհամբեր,
Ունի մի զույգ կարելական
Լեռնավազքի նոր դահուկներ,
Ի՜նչ դահուկներ, նկուն ու լավ,
Կապիչները՝ պինդ ու փայլուն...
...Բայց նա տանն է նստում հիմա
Ու սպասում ձմռան գալուն։

# ԳԻՇԵՐՕԹԻԿԻ ՏՂԱՆ

Բ. ՍԵՅՐԱՆՅԱՆ

Նկ. Հ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ

*Լեռնոտ աշխարհ է մեր Գուգարքը։ Լեռները ծալքեր շատ ունեն։ Ու նրանց ամեն ծալքում՝ մի գյուղ։ Դե,արի ու որոշիր, թե որ գյուղացի էր այն տղան։*

* * *

*Աշնան մի վաղ առավոտ խճուղով մեն-մենակ գնում էր նա։ Գիշերօթիկցու համազգեստով էր, փոքրիկ կապոցը թևի տակ։ Երևում է, արձակուրդ էր գնացել գյուղ, հանգստացել ու հիմա քաղաք էր վերադառնում։ Մտքի մեջ ընկերներն էին, նրանց հետ անցկացրած հաճելի օրերը, իսկ շուրջը հարազատ տեսարաններ՝ գեղեցիկ, վեհաշուք։*

*Խճուղին անցնում էր ձորի միջով՝ գետին ընկերացած, նրա հետ խաղալով, հազար ոլոր տալով։*

*Ջրերում աշուն էր, պայծառ տերևաթափ։ Ալիքներն իրենց հետ բերում էին աշնան անտառի տերևները։ Թվում էր, թե գետի մեջ հազարավոր ոսկե ձկնիկներ են խլղըլղում։*

*Մի փոքրիկ թռչնակ՝ մազութի պես սև, ճակատը պեծիկ, սուզվում կորչում էր ջրերի մեջ, հետո մի ուրիշ տեղ հանկարծ դուրս պրծնում՝ դեղին տերևը կտցին։*

*Խաբված սուզահավն էր դա։*

*Նրա կայտառ ճռթոցին անտառից մոշահավն էր արձագանքում, էլի ուրիշ թևավորներ, և վաղ առավոտյան ջինջ օդը գրնգում էր թռչունների համերգից։*

*Հարազատ հնչյուններ կային համերգում, որին պատանին ձայնակցում էր սուլոցով։*

*Գետի ձախ ափում անտառն էր, աջում՝ հենց խճուղու եզրին, պատի պես բարձրացող քարաժայռերը։*

*Կտեսնեիր՝ մոխրատերև մի փուշնի ճեղքել է ժայռը, արմատներով պինդ հյուսվել քարերին, ժայռը պատվանդան շինած՝ բարձունքից խրոխտ նայում է դեպի ցած։*

*Կտեսնեիր՝ արջակերպ մի կաղնի իր հետ երկինք է հանել ահագին մի քար, փրչոտ ճղերի մեջ առած, հսկումի է կանգնել իր դիրքում։*

*Կտեսնեիր՝ կապտասաղարթ մի կենի մեջքը դեմ է տվել քարափին, թիկունքով պահում է մի ահավոր քարահեղեղ։*

*Ի՜նչ դիվական ուժ, ի՜նչ տոկունություն…*

*Մարմնեղ չէր պատանին։ Նիհար, չորուկ մի տղա էր նա, դեմքը ցորնագույն, ռունգները թեփոտ։ Բայց երբ նայում էր շրջապատի այս տեսարաններին, մկանները պրկվում էին, ուժերը՝ հազարապատկվում։ Ուզում էր փուշնու պես հյուսվել ժայռերին, կաղնու պես հսկա քարեր բարձրացնել, կենու նման մեջքով քարահեղեղ պահել, որ խճուղով մարդիկ ապահով անցնեն, մեքենաները՝ անվտանգ։*

*Բայց չէր անում, որովհետև… խիստ շտապում էր։ Չէր ուզում ուշանալ։*

*Մեքենայի հույսով նա խճուղի իջավ։ Բախտը չբերեց. երթևեկություն չէր սկսվել։ Ստիպված ոտքով գնաց։ Սպասելու փոխարեն գոնե առաջ կանցնի։ Քայլում էր արագ, թեթև։ Սովոր ոտքեր էին։ Գյուղում գառնարած էր եղել՝ գառների հետ վազվզել, ուլերի հետ քարափներ մագլցել։ Արևը խանձել էր նրան, ցուրտն ու քամին թրծել էին, դարձրել ջլուտ ու տոկուն։ Գիշերօթիկում լավ սպորտսմենի համբավ ուներ։ Քչերն էին նրա հետ մրցում։*

* * *

*Խճուղու ոլորանում մեկ էլ նրա ականջին հասավ անհուսական մի ճիչ։ Թվաց, թե մեկն օգնություն է կանչում։ Կանգ առավ։ Մոշենու խիտ թփերը թաքցնում էին ձորը։ Գետը չէր երևում։ Ձայնը նորից կրկնվեց։ Ասես մեկը խեղդվում էր։ Ճանապարհից թեքվելով, նա ճեղքեց թփուտն ու համարյա կախ ընկավ ձորի վրա։*

*Փրփրած հոսում էր գետը։ Հովվական թավամազ գամփռների պես քարերի գլխով թռչում էին ալիքները, հասնում իրար, թավալգլոր գալիս, գզում-գզվրտում, ձորը լցնում ամեհի վշշոցով։*

*Բայց այս ի՞նչ է գետի մեջ։ Քարափից գահավիժած մոխրագույն փուշնի՞, թե՞…*

*Նայեց ավելի ուշադիր և արդեն որոշակիորեն տեսավ գետն ընկած «Մոսկվիչ» մեքենան, ո՛ր շրջվել, կիսով չափ թաղվել էր ջրի մեջ, անիվները վեր տնկել։*

*«Վթար»—շամփրեց նրա ուղեղում։*

*Պատանին ետ ցատկեց, մտավ խճուղին, նայեց աջ-ձախ։*

*— Օգնեցե՜ք,— ճչաց շնչակտուր, սկսեց վազել խճուղու երկայնքով։*

*Բայց մեկ էլ ուշքի եկավ։ Այն ու՞ր է վազում, ու՞մ օգնության կանչում, երբ շրջակայքում ոչ ոք չկա։*

*«Հենց դու, դու՛ պիտի օգնության հասնես. էլ ո՞վ»— ասաց մի ներքին ձայն, և նա ետ գալով, շտապեց դեպի ձորը։ Կտրեց-անցավ մոշուտը։ Թփե-*

րից, քարերից կառչելով, համարյա գլորվելով իրեն ձորը գցեց, մտավ ջուրը, լողաց առաջ։ Ձեռքերն արյունոտվել էին։ Շունչը կտրվում էր։ Բայց նա ուշք չէր դարձնում դրանց վրա։ Ջրերը ճողփելով, քարից-քար անցնելով, հասավ մեքենային, ճարպկորեն թռավ կախ ընկավ առջևի անիվից, որպեսզի մարմնի ծանրությամբ «Մոսկվիչը» կողքի թեքի, գոնե դռնակներից մեկը դուրս հանի ջրից։

Չգիտես ի՞նչն էր շփոթված, թե՞ անվադողն էր լպրծուն, որ ձեռքերը դուրս պրծան և նա թրմփաց ջրի մեջ, կպավ մի քարի, քիչ մնաց ուշքը կորցներ։

Ջուրը քշեց բավական տեղ։ Հորձանուտը պիտի գցեր, եթե նա ձկան ճարպկությամբ մարմինը ոլորելով, չկառչեր մի ցից քարից, շունչը տեղը բերեր ու կրկին ետ լողար։ Մեծ ջանքով կարողացավ հասնել մեքենային։ Թե ովքեր կային մեքենայի



մեջ, ինչ էր կատարվում ներսում, հնարավոր չէր տեսնել։ Լսվում էր միայն մեկի աղիողորմ ձայնը։

Ու նա նորից գործի անցավ։

Այս անգամ «Մոսկվիչին» մոտեցավ ձախ կողմից։ Բնազդը նրան ճիշտ էր հուշել։ Պետք էր, ինչ գնով էլ լինի, մեքենան կողքի թեքել։ Նորից կախ ընկավ անվադողից, նորից թրմփաց։ Բավական ջուր կուլ տալով, քիչ մնաց շնչահեղձ լիներ։ Ախ, թե կարողանար...

Քարերից բռնելով, պատանին անցավ հոսանքի կողմը։ Ուժ տվեց, հրեց էլի՛, էլի՛։ Մեքենան շարժվեց տեղից, անհուն ոգևորություն պատճառելով նրան։ Թվաց, թե տղան կարողացավ երկրագունդը տեղահան անել։ Ուժերը հազարապատկվեցին։

Չգիտես ժայռը ճեղքող փուշնո՞ւն հիշեց, հետո ահագին քար բարձրացրած փուչոտ կաղնո՞ւն, թե՞ քարահնձեղը մեջքին պահող կապտաաղարթ կենուն, որ հրեց, ուժ տվեց մի գերբնական թափով։ Գետի հորդառատ ալիքները օգնեցին նրան, և «Մոսկվիչը», ասես հրաշքով, կողքի թեքվեց։

Նա թռավ, բարձրացավ մեքենայի վրա, որքան ուժ ուներ ձգեց բռնակը։ Մեկը ուսով օգնեց ներսից։ Դռնակը փեղկվեց։

Հենց այդ ժամանակ օգնության հասան ինչ-որ մարդիկ։ Խճուղում կանգ առան մեքենաներ, ռեյսային մի ավտոբուս, և ձորը լցվեց ահագին բազմությամբ։

Վթարի ենթարկված «Մոսկվիչից» դժվարությամբ դուրս հանեցին վիրավոր մի մարդու, հետո ուշաթափ մի կնոջ, երկու կիսախեղդ մանուկների։

Ամեն որ ձգտում էր մի բանով օգնած լինել։ Մեկը վերք էր փաթաթում, մեկը արհեստական շնչառությամբ ե.. բերում ուշագնացներին։ Մեկը գուրգուրում նվացող մանկանը, մեկն՝ իր թիկնոցը, բաճկոնը առաջարկում, մեկը դեղահաբ փնտրում ձեռքի ճամպրուկում։

Երբ վտանգն անցավ, և վթարի ենթարկվածները մի քիչ ուշքի եկան, վարորդը, որ այդ ընտանիքի հայրն էր, ուզեց տեսնել իրենց փրկարարին։ Նայեց աջ-ձախ, մեկին, մյուսին։ Փնտրեցին և ուրիշները։ Հարցուփորձ արեցին իրար, բայց չգտան։

— Կարծեմ, պատանի պիտի լիներ,— ասաց վարորդը։

— Գիշերօթիկցու համազգեստով էր՝ ոտից գլուխ թաց,— նկատեց մեկ ուրիշը,— թռավ բարձրացավ խճուղով անցնող մի բեռնատար մեքենա, գնաց քաղաքի կողմը...

Ահա բոլորը։ Էլ ոչ մի տեղեկություն նրա մասին։

Լեռնոտ աշխարհ է մեր Գուգարքը։ Լեռները ծալքեր շատ ունեն։ Ու նրանց ամեն ծալքում՝ մի գյուղ։ Արի ու իմացիր, թե որ գյուղից էր նա։



# ՈՉ ՄԻԱՅՆ ԳԼԽԱՐԿԸ

*ԿԱՄԱՐԻ ՏՈՆՈՅԱՆ*

Ամեն առավոտ մայրը երեխային տալիս էր քսան կոպեկ.

— Սա տրոլեյբուսի ու նախաճաշի համար,— ասում էր նա:

Այդ քսան կոպեկով իսկապես կարելի էր միայն նստել տրոլեյբուս, հասնել դպրոց, մեծ դասամիջոցին նախաճաշարանում նախաճաշել և դասերից հետո տրոլեյբուսով վերադառնալ տուն: Մանավանդ որ դպրոցը տանից հեռու էր, չէր կարող տրոլեյբուս չնստել, և մեծ դասամիջոցին նա ամեն անգամ զգում էր ուտելու ցանկություն:

Բայց մայրը ամեն անգամ այդ քսան կոպեկը տալիս՝ կրկնում էր.

— Սա տրոլեյբուսի ու նախաճաշի համար:

Տղային այդ ավելորդ էր թվում, և ամեն առավոտ նա ասում էր մորը.

— Լավ:

Տղան կարող էր այդ քսան կոպեկով գնել որևէ ուրիշ բան, ասենք՝ արևածաղկի սերմ, թեկուզ հենց նրա համար, որ մոր ասածը անտեղի չլիներ և ունենար որևէ նշանակություն: Բայց այդ դեպքում նա ստիպված պիտի լիներ տուն գալ ոտքով կամ քաղցած մնալ:

Դպրոցի նախաճաշարանում այդ օրն էլ մեծ դասամիջոցին աղմուկ էր: Տղան նստել էր հեռավոր անկյունում, սեղանի մոտ: Նա վերցրել էր երկու կարկանդակ և մի բաժակ կակաո: Մի կարկանդակը նա արդեն կերել էր, կերել էր և մյուսի կեսը, խմել էր կակաոյի կեսից ավելին: Մոտեցավ Արան.

— Դու ինձ մի քիչ փող չե՞ս տա:

Սովորաբար այդ Արան անհոգ տղա էր: Սակայն հիմա նա մտահոգ էր. նրա դեմքն այնպես էր, ինչպես լինում էր վատ գնահատական ստանալուց հետո, և շվարած էր, կարծես մեկը նրան առաջադրել էր մի բարդ խնդիր:

— Միայն հինգ կոպեկ. տասը կոպեկ ես ունեմ, վաղը կվերադարձնեմ: Եթե ինձ հինգ կոպեկ տաս, ես կկարողանամ վերցնել երկու կարկանդակ և մի բաժակ կաթ. հը՛, կտա՞ս: Ես ունեի, բայց ահա՛...

Արան շուռ տվեց անդրավարտիքի մաշված գրպանը, մատը խրեց ծակերից մեկի մեջ.

— Մաշ է դարձել. փողերը շաղ եմ տալիս:

Արան չէր համբերում:

— Դե, ասա՛, կտա՞ս, թե չէ ուրիշից կուզեմ:

— Դու քաղցա՞ծ ես,— հարցրեց տղան և նայեց առջևի կիսատ կարկանդակին ու կիսատ բաժակին. անհեթեթ կլիներ հիմա նրան առաջարկել միասին նախաճաշել: — Գոնե մի քիչ շուտ ասեիր:

— Ջունե՞ս, ինչ է,— արդեն կարծես զայրացավ Արան:

— Ունեմ:

— Մի՛ երկարացրու.. վաղը ես կտամ:

Տղան գրպանից հանեց իր մոտ մնացած վեց կոպեկը, դրեց սեղանին:

Քիչ հետո Արան նստեց նրա մոտ. նա վերցրել էր երկու կարկանդակ և մի բաժակ կակաո: Նրանք նախաճաշեցին միասին, և դա շատ էր հաճելի:

Դասերից հետո տուն գնալու համար տղան նստեց տրոլեյբուս: Նա կանգնել էր ետևի հարթակին և նայում էր դուրս:

— Տղա՛, տոմս վերցրու,— ասաց տոմսավաճառը:

Տղան ձեռքը տարավ գրպանը և հիշեց, որ փող չունի: Տոմսավաճառը բարձրահասակ, գեր մի կին էր, կլոր դեմքով, կանաչ, անհաշտ աչքերով, որոնք տղային նայում էին վերևից: Սակայն տղան չվհատվեց, նա համոզված էր, որ կարող էր հավատացնել այդ կնոջը, որ ինքը փող չունի, որովհետև այդ իրոք այդպես էր:

— Չե՞ս լսում, քեզ հետ եմ, տոմս ստացիր, ի՛նչ ես ապշած նայում դեմքիս,— տոմսավաճառը խոսում էր կոպիտ, բարձրաձայն: Ուղևորներից մի քանիսը ետ դարձած՝ նայում էին. տղան ձեռքը խրել էր գրպանը, չէր հանում. նա չէր կարող շուռ տալ գրպանը, ցույց տալ նրան: Մարդիկ նայում էին, և նա չէր ուզում ասել՝ «փող չունեմ»: Որպեսզի նրանցից ոչ ոք չլսեր, նայեց տոմսավա-

ճառին պարզ հայացքով, ջանալով հավատել, որ ինքը չի ստում և որ ինքը ուզում է, որ այդ իմանան միայն ինքն ու նա: Եվ տղան գլուխը հազիվ նկատելի տարուբերեց բացասաբար.

— Ի՞նչ է, փող չունե՞ս:

Տղան հաստատեց գլխով:

— Չունես՝ տրոլեյբուս մի՛ բարձրացիր: Կարմիր վզկապ է կապել, բայց առանց տոմսի երթևեկում է:

Տոմսավաճառը հագած էր մույկեր ու բրդե հաստ գուլպաներ, հաստ ոտքերը լայն դրած՝ կանգնել էր հաստատ և համարյա բղավում էր: Ուղևորները բոլորն էլ դարձել նայում էին նրանց: Տղան ամոթ էր զգում, և եթե հիմա տրոլեյբուսը կանգ առած լիներ և դուռը բաց լիներ, նա դռնից



Նկ. Ն. ՔՈԹԱՆՋՅԱՆԻ

դուրս կցատկեր:

— Ես մոռացա...— տղան ուզեց բացատրել, որ ինքը փող չունի, որ եթե ինքը հիշեր, որ չունի, չէր բարձրանա տրոլեյբուս. Նա հավատում էր, որ այդ կինը կհասկանա, թե իր համար որքան ամոթ է...

— Ոչինչ չգիտեմ, տոմսդ ստացիր...— Նրան ընդհատեց տոմսավաճառը:

Տղան պապշեց. այդ կինը չէր հասկանում իրեն կամ չէր ուզում հասկանալ: Նա հավատում էր, որ գոնե մյուսները կհասկանային, կմիջամտեին:

— Մի սրա՞ն տես,— գոռգոռում էր տոմսավաճառը: Նրա գեր դեմքը զարմանալի կարմիր էր, և աչքերը զարմանալի կանաչ փայլում էին:

— Անմեղ է ձևանում: Ստացի՛ր, թե չէ...— Նա ձեռքը գցեց տղայի ուսին, մոտ քաշեց.

— Ստացի՛ր, ասում եմ...

Տղային անելու կամ ասելու ուրիշ ոչինչ չէր մնում:

— Փող չունեմ,— ասաց նա:

Եվ զգաց, որ միայն այդքանով բոլորն այլ կերպ էին հասկանում իրեն. ամաչում էր, բայց ավելին անելու ժամանակ չէր գտնում:

— Չունես՝ մի՛ նստիր...

— Վատ են սովորեցրել...

Տղան չլսեց, թե այդ ով ասաց, սակայն կանացի այդ միակ ձայնը հաստատեց, որ ամենքն էլ այլ կերպ էին հասկանում իրեն և նախատում էին: Նա ջանում էր դուրս պրծնել տոմսավաճառի ձեռքերից:

— Պիտի ստանա՞ս, թե՞ չէ...— տոմսավաճառը ձեռքը գցեց նրա գլխարկին, խլեց.— Դե մի՛ ստացիր, մինչև չստանաս, չեմ տա...

Տղան ետ ոստնեց, նայեց նրան, վհատ նայեց բոլորին. տրոլեյբուսը դանդաղեցնում էր ընթացքը:

— Գլխարկը տո՛ւր նրան,— ասաց ինչ-որ տղամարդ:

Տոմսավաճառը գլխարկը պարզեց.

— Վերցրու՛:

Տրոլեյբուսը կանգ առավ: Տղան զգաց, որ նրանք բոլորը հասկացել էին ինչ-որ բան և զգաց, որ այդ կինը ևս հասկացել էր.

— Վերցրու՛ գլխարկդ:

Տղան ցատկեց բացված դռնից:

— Տղա՛, վերցրու՛ գլխարկդ, լսու՞մ ես, գլխարկդ...— լսեց նա իր հետևից, ետ չդառավ, չնայեց ետ:

Նա քայլում էր մայթով, մարդկանց արանքով, արագ, ասես ջանալով պահ առաջ հեռանալ և չլսել այդ ձայնը:

Նա տուն եկավ սովորականից ուշ:

— Ինչու՞ ուշացար.— հարցրեց մայրը:

— Ոտքով եկա,— ասաց նա:

Մայրը նկատեց.

— Ինչու՞ մի տեսակ տխուր ես: Ո՞ւր է գլխարկդ:

— Կորցրել եմ,— ասաց տղան:

— Ոչինչ, մի՛ տխրիր:

Բայց տղան տխուր էր:

Այդ օրը նա կորցրել էր ոչ միայն գլխարկը:

# Թե ինչու հայրը չի խոսում

Հ. ԲԱԽՏԱՄՅԱՆ

Նկ. Ս. ՎԱՐԴԱՆՅԱՆԻ

*Պարզ ամառային օր էր։ Առավոտվա մեղմ զեփյուռը հարազատի ձեռքի պես շոյում էր Լևոնի ճակատը։ Նա այնքան էր հոգնել օձագալար ճանապարհներից, որ թվում էր, թե տեղ չպիտի հասնի։*

*Նա գնում էր դանդաղ՝ ռազմաճակատից տուն։*

*Խոր մտքերով Լևոնը հասավ մանկության սիրած վայրերը։*

*Օ՜հ, ինչքա՜ն ուրախ ու երջանիկ էին մանկության օրերը, որքա՜ն քաղցր... Նա մի պահ հիշեց․ քանի՜-քանի՜ անգամ այս աղբյուրի մոտ բարկացրել է իր ընկերուհուն, ջուր ցանելով նրա շորերին... Թեև շատ էր չարչարում ու լացացնում Թամարին, բայց նա չէր նեղանում։*

*Իրիկնամուտ էր։ Արևը թեքվել էր Բիրսա սարի հետևը։ Լևոնը մոտեցել էր իր ամենասիրած «Սալ» քարին, որը շատ հուշեր էր արթնացնում իր մեջ։ Նա նստեց սովորականի պես, կարծես հոգնած ոտքերով չէր անցել պատերազմի ճանապարհները։ Ահա «Մարաբանդի» մամռոտ շուրթը, որով նեղլիկ կածանը օձագալար ձգվում է դեպի Սխտորաշեն գյուղը։*

*Շատ էր պատահել, որ ցախ շալակած՝ գյուղ էր մտել և աղբյուրի մոտ հանդիպել Թամարին։*

*— Լևոն, քի՛չ շալակի, մի՛ վախենա, անտառի ցախը չի վերջանա։*

*Նա շիկնել էր Թամարի խոսքերից, չնայած չէր զգացել վրայի ծանրությունը, բայց ամաչելուց սկսել էր քրտինքը հոսել երեսից։*

*Լևոնը չէր շտապում գյուղ մտնել։ Թող մարդիկ չտեսնեն իրեն այսպիսի վիճակում... Ինչպե՞ս հանդիպի Թամարին... ո՞նց պատմի այն ամենը, ինչ տեսել է կռվում... Նա վեր կացավ «Սալ» քարից և քայլերն ուղղեց դեպի գյուղ տանող նեղլիկ, գալարվող կածանը։*

*Երբ հասավ տան մոտ հոսող առվին, լսեց ջրչրոցներ, որոնք խանգարում էին գիշերվա լռությունը, հիշեց Թամարի խոսքերը.*

*— Լևոն, քի՛չ շալակի, մի՛ վախենա, անտառի ցախը չի վերջանա...*

*Լևոնը դարձավ կոլտնտեսության խոզապահ։ Նա հաճախ է խոզերին բերում «Բարաբանդի» լանջը, նստում իր մանկության սիրած «Սալ» քարին և սպասում որդուն։*

*Օրը ճաշ է դառնում, բայց որդին չի գալիս։ Լևոնը անհանգստանում է և հայացքն ուղղում դեպի գյուղ տանող կածանը։ Արդյոք երեխան չի՞ երևում. Թամարն ինչու՞ է ուշացնում նախաճաշը։*

*Մտքերի մեջ էր Լևոնը, երբ երեխան ձայն տվեց.*

*— Հայրի՜կ... հայրի՜կ։*

*Արամը գիտե, որ հայրը չի խոսում, բայց թե ինչու՞ չի խոսում, այդ մասին ոչինչ չգիտե։*

*Մի անգամ հարցրել էր մորը, իսկ մայրը պատասխանել էր, որ հայրը պատերազմում է համրացել։*

*Ի՞նչ բան է պատերազմը, Արամը չի հասկանում, սակայն միշտ լռում է։*

*Ամեն անգամ, երբ հոր համար հաց է բերում «Սալ» քարի մոտ, Լևոնը միշտ ձեռքերով է խոսում որդու հետ։ Արամը համբուրում է հորը և ասում.*

*— Հայրիկ, երբ մեծանամ, ես այդ պատերազմին ցույց կտամ... Եվ նա սպառնալիքով բռունցքներն է թափահարում։*

*Հայրը լսում է Արամին, աչքերն արցունքակալում են։ Որդին թաթիկներով մաքրում է հոր արցունքները...*

*Ա՜խ, պատերազմ, պատերազմ... քո պատճառով է, որ հայրիկը չի խոսում...*






Վ. ԲԱԲԱԽԱՆՅԱՆ
(Վաստակավոր ուսուցիչ)

Դպրոցում պիոներական կյանքն ավելի աշխուժացավ հոկտեմբերի երկուսից հետո։ Այդ օրվանից սկսվեց պիոներական ջոկատների համամիութենական մրցությունը։

Կարմիր վզկապավորները հավաքվելով պիոներական սենյակում, հուզմունքով մտքեր էին փոխանակում ընկերների հետ, պատմում իրենց երազանքների, ծրագրերի ու լավագույն գործերի մասին։

Հաճախ այդ մտերիմ զրույցներն ավարտվում էին աղմուկով ու վիճաբանությամբ. նրանցից յուրաքանչյուրը համոզված էր, որ մրցման մեջ հաղթելու է իրենց ջոկատը։

Եվ ինչպես չհուզվել, երբ վճռվում է ջոկատի բախտը, նրա պատիվը։ Պիոներական ջոկատների խորհրդի նախագահները ամեն օր խորհրդակցում էին ջոկատավարների, ավագ ընկերների հետ, բազմաթիվ հարցեր ուղղում ուսուցիչներին, իմանում նրանց կարծիքը և եռանդուն գործի կպչում։

Դրուժինայի նկարիչները՝ Վարդանը և Աշոտը, շուտով դպրոցի մուտքի մոտ փակցրին մի նկար, որն արտահայտում էր պիոներների հանրօգուտ աշխատանքի մի քանի դրվագներ։ Նրա տակ մեծ տառերով գրված էր. «Տեսնենք՝ ու՞մ ջոկատը կհաղթի»։

Դպրոցում փակցրած լոզունգներն ազդարարում էին. «Լենինի անունը յուրաքանչյուրիս սրտումն է», «Մեր նվիրվածությունը պարտիային կապացուցենք գործով»։ «Ջոկատը սովորում է ապրել և աշխատել կոմունիստաբար»։ «Մրցման մեջ կշահեն այն ջոկատները, որոնք ավելի կենսունակ են ու համերաշխ, որտեղ բարձր է ընկերասիրության ոգին, որտեղ իրենք՝ պիոներները կհանդիսանան լավագույն, հայրենասիրական գործերի նախաձեռնողներն ու իրականացնողները»։

**1963 թ.** օգոստոսին լրանում է Սովետական Միության Կոմունիստական պարտիայի հիմնադրման 60-ամյակը։

Ի պատիվ հարազատ պարտիայի, պիոներները պետք է կազմակերպեն Վ. Ի. Լենինին նվիրված դպրոցական ցուցահանդեսներ, պատի թերթեր, հանդիպումներ հին կոմունիստների և կոմունիստական աշխատանքի բրիգադների անդամների հետ:

Շատ ջոկատներ արդեն նախատեսել են կազմել հատուկ ալբոմներ, որտեղ հիշատակվելու է իրենց գյուղի կամ քաղաքի պարտիական ու կոմերիտական կազմակերպությունների տարեգրությունը:



Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ

Մրցության հիմնական սկզբունքներից մեկը ազնըվության, աշխատասիրության, հաստատակամության և ընկերասիրության հարցն է. պիոներներից պահանջվում է բարձր կարգապահություն և ամենօրյա քրտնաջան աշխատանք:

Որպեսզի ջոկատը երկտարեցիներ չունենա, անհրաժեշտ է ուսման մեջ ետ մնացողներին օգնել: Այդ նպատակով պիոներական դրուժինային կից կարելի է կազմակերպել «բարի ծառայության բյուրո», ուր յուրաքանչյուր ջոկատ կուղարկի ուսման առաջավորներին, որոնք կօգնեն ետ մնացող ընկերներին՝ հասկանալու և պատրաստելու դժվար դասերը: Ուսման առաջադիմությանը մեծապես կօգնեն օլիմպիադաների, կոնկուրսների սիստեմատիկ կազմակերպումը:

Ջոկատներում հաճախ կարելի է կազմակերպել աշխույժ դիսպուտներ՝ «Ի՞նչ ես հասկանում լավ ընկեր ասելով», «Ո՞րն է գեղեցիկը մարդու մոտ», «Իմ սիրած հերոսը», «Ինչպիսի՞ն կլինի կոմունիստական հասարակարգի մարդը» և նման հարցերի շուրջը, իհարկե, այդ ամենը կապելով տվյալ ջոկատի առօրյային: Լավ է այն պիոներական ջոկատը, որի տեսադաշտից չի վրիպում ոչ մի պիոներ: Եթե մեկը դպրոց չի հաճախում, սխալ է գործել. ջոկատը պետք է օգնի նրան՝ վերադառնալ դպրոց, ճիշտ ուղու վրա կանգնել, դժվարության, որևէ անհաջողության դեպքում՝ փրկության, օգնության ձեռք մեկնել ընկերոջը:

«Մարդը մարդուն եղբայր է, ընկեր ու բարեկամ»— սրանում պետք է արտահայտվի ջոկատի ուժը:

Պիոներական դրուժինային կից կազմակերպված պատանի տեխնիկների, տուրիստների, թատերասերների, բնասերների, թմբկահարների և այլ խմբակներ կարող են ղեկավարել պիոներ-հրահանգիչները:

Իսկ ի՞նչ վատ կլինի, եթե կիրակի օրերը ջոկատներն անցկացնեն քայլի, վազքի մրցումներ, գնան տուրիստական արշավի: Թող բոլորը շախմատ, շաշկի, վոլեյբոլ ու բասկետբոլ խաղան, զբաղվեն ընթերցանությամբ, կինո, թատրոն գնան:

Ջոկատը միշտ կարող է հասարակական հանրօգուտ աշխատանք կատարել կոլտնտեսություններում, շեֆ գործարանում ու ֆերմայում:

Իսկ որքան լավ է, երբ պիոներներն օգնության են գնում իրենց փոխարինողներին՝ հոկտեմբերիկներին, նրանց խաղեր ու երգեր սովորեցնում, զըբոսանքներ անցկացնում, զբոսանքի տանում: Լավագույն ջոկատներին խրախուսելու համար, դրուժինայի խորհուրդը կարող է սահմանել տարբեր գույների վիմպելներ, մեդալներ, գավաթներ, որոնք կնվաճեն աշխատանքի որոշակի բնագավառում առաջնություն շահած ջոկատները:

Մրցումն սկսված է: Թող յուրաքանչյուր ջոկատ ցուցաբերի իր հնարամտությունը:

Այդ հիանալի գործում ձեզ կօգնեն ուսուցիչները, կոմերիտականներն ու ջոկատավարները:




Մ. ԱՐՄԵՆ

(«Թվաբանական գյուտ»-ի լուծումը. տե՛ս «Պիոներ» № 8)

Որքան մեծ եղավ Վահանի զարմանքը, երբ երկու ժամ հետո վերադառնալով տուն, տեսավ իր փոքր եղբորը՝ Գարիկին, դեռ սեղանի մոտ նստած, գլուխը թղթերի վրա կախած։

Նայելով թղթերին, Վահանը հասկացավ, որ Գարիկի «վիճակն» այնքան էլ լավ չէ։ Թղթերի վրա, ամեն ուղղություններով, գրված էին բազմաթիվ ու բազմաթիվ թվանշաններ, ապա թուղթը պատռված էր կամ վրան խաչ քաշված։

Տեսնելով ներս մտնող եղբորը և նկատելով նրա ծաղրական հայացքը, Գարիկը բարկացավ.

— Դու մի՛ կարծիր, թե ես խրվել եմ ու մնացել։ Մի քիչ որ ուշ գայիր՝ կգտնեի լուծումը։ Հը՞...—հարցրեց նա ինքն իրեն։ Եվ պատասխանեց անկեղծությամբ.—Սուտ եմ ասում, հազիվ թե գտնեի։ Բայց որոշ բաներ պարզել եմ ինձ համար։

— Ապա՞, ապա՞,—հետաքրքրվեց մեծ եղբայրը։

— Գիտե՞ս ինչ, Վահան։ Դու առաջարկում ես գտնել մի օրենք, որով կարողանանք որոշել, թե բաժանվու՞մ է արդյոք այսինչ թիվն այնինչ թվի վրա։ Դու նկատի ունես բոլոր թվերը, ճի՞շտ է։

— Ճիշտ է։

— Բայց մեր ինչի՞ն են պետք բոլոր թվերը։ Ասենք թե, դու ինձ տվել ես 375, կամ 842, կամ 1970։ Ես առաջին թիվը կբաժանեմ 5-ի, էլի 5-ի, էլի 5-ի և վերջ։ Երկրորդ թիվը կբաժանեմ երկուսի, կստանամ 421 և միայն դրանից հետո հարց կդնեմ՝ բաժանվու՞մ է արդյոք այդ թիվն այսինչ թվի վրա։ Ճիշտ չէ՞։

— Ճիշտ է,—համաձայնեց եղբայրը։

— Նույնը և զերոյով վերջացող թվի հետ,—շարունակեց Գարիկը։—Ինչու՞ չարչարվեմ դրա վրա, երբ կարող եմ զերոն ջնջելով թիվը կրճատել տասն անգամ և ապա միայն...

— Այդ էլ է ճիշտ,—նորից հաստատեց Վահանը։

— Ուրեմն,—եզրակացրեց Գարիկը,—ի՞նչ է մնում տակը։ Մնում են բոլոր այն թվերը, որոնք վերջանում են 1, 3, 7 և 9 թվանշաններով։

— Խելոք ես մտածել։ Հետո՞։

— Հետո՞...—Գարիկը, որ մինչ այդ խոսում էր արագ-արագ ու սահուն, կմկմաց, կակազեց։—Հետո չկա։ Այդտեղ վերջանում է։

— Ընդհակառակը, այդտեղից սկսվում է,—ուղղեց Վահանը։

— Դե սկսի՛ր,—առաջարկեց փոքր եղբայրը։

Վահանի դեմքի արտահայտությունը դարձավ հանդիսավոր, նա խիստ լրջացավ. չէ՞ որ հայտնելու էր իր արած թվաբանական գյուտը, այսինքն այն, թե ինչպես մի, միայն մի կանոնով կարելի է որոշել, թե բաժանվու՞մ է արդյոք ուզածդ որևէ թիվն ուզածդ որևէ թվի վրա։ Միայն մի կանոնով։ Ամենից շատ դա էր հետաքրքրում Գարիկին։ Եվ որքա՜ն մեծ եղավ նրա հիասթափությունը, երբ եղբայրն իր ասելիքն սկսեց այսպես.

— Ճիշտն ասած, իմ գտածը ոչ թե մի կանոն է, այլ...

— Է՛, չեղավ,—բացականչեց Գարիկը,—դու ինձ խաբել ես։

— Դու լսիր շարունակությունը,—ժպտաց Վահանը։—Ոչ թե մի կանոն է, այլ...

— Չեմ ուզում, քեզ պահիր քո կանոնները,—նույնիսկ վիրավորվեց Գարիկը,—առանց քեզ էլ գիտեմ մոտ տասը կանոն, հազիվ եմ այդքանը մտքումս պահում։ Մի տասը կանոն էլ դու՞ ես ասելու մի տասը թվի մասին։

— Իմ գյուտը վերաբերում է բոլոր թվերին, բայց նա բաղկացած է ոչ թե մի կանոնից, այլ... մեկուկես,—վերջապես կարողացավ իր խոսքն ավարտել Վահանը։

— Հը՞... մեկուկե՞ս... Նույնիսկ ո՞չ երկու։ Դա կարելի է, ներելի է,—հաշտությամբ գլխով արեց Գարիկը։— Ուրե՞մն...

Նա լարվեց ամբողջ ուշադրությամբ։

— Լսիր շատ ուշադիր,—ասաց, այնուամենայնիվ, մեծ եղբայրը,—որովհետև քեզ ասելու եմ իմ ֆորմուլան... Եվ այսպես... Իմանալու համար, թե բաժանվո՞ւմ է արդյոք տվյալ թիվը 1-ով, 3-րդ և 9-ով վերջացող որևէ բաժանարարի վրա, հարկավոր է.

1. Բաժանարարից հանել դրա տասնավորները։ Օրինակ, 49-ից հանել 4-ը։ Կմնա 45։

2. Մնացորդը՝ 45-ը, բաժանել բաժանարարի միավորների, այսինքն՝ 9-ի վրա։ Քանորդը կլինի 5։

Ահա այդ կերպ ենք գտնում «կախարդական թիվը»։ Ահա այդ միջոցով գտած թվով ենք բազմապատկում բաժանելիի միավորները, ավելացնում մնացած թվի վրա, կրկնում այդ գործողությունն այնքան անգամ, որքան որ պետք է։

Վահանն սպասում էր, որ Գարիկը պետք է հառաչեր հիացմունքից, բայց Գարիկը քրքջում էր բարձրաձայն։

— Ի՞նչ պատահեց քեզ,—զարմացավ մեծ եղբայրը։

— Տասն անցյալ օրը մի առակ պատմեց Մոլլա Նասրեդդինի մասին,—ասաց փոքր եղբայրը՝ դրանով ավելի զարմացնելով Վահանին։—Մոլլան վաճառում է մկներին ոչնչացնող դեղ։ Բոլորը գնում են այդ դեղը, որից հետո մեկը գլխի է

— Կասեմ։ Իսկ առայժմ եկ մի անգամ էլ փորձենք։ Այս անգամ՝ 41-ի հետ։ Բաժանվու՞մ է դրա վրա 4060189-ը։

— Իհարկե։ Մի երկու ժամ առաջ մենք բաժանեցինք։

— Գտիր «կախարդական թիվը»։

Եվ Գարիկը, առաջին անգամ, ինքնուրույն կիրառով ճնանարկեց գործի. 41-ից հանած դրա տասնավորները, այսինքն՝ 4-ը, կմնա 37։ 37-ը բաժանած դրա միավորների վրա... չի բաժանվում։

— Եվ չի էլ բաժանվի,—խրատեց եղբայրը։—Որովհետև պետք է բաժանել ոչ թե «դրա», այլ բաժանարարի, այսինքն՝ 41-ի միավորների վրա։

— 1-ի՞...—զարմացավ Գարիկը։

— Ի՞նչ կա որ, մեկը թվանշան չէ՞, ի՞նչ է։

— Բայց կստացվի էլի նույնը, 37։

— Ուրեմն այդպես էլ պետք է։

— Եկ հիմա փորձենք 43-ը։

— Կարիք չկա, հասկանալի է,—գոհ մնաց փոքր



Նկ. Կ. ՍՄԲԱՏՅԱՆԻ

ընկնում, որ պետք է հարցնել, թե ինչպես գործածել։ «Պետք է բռնել մկանը,—ասում է Մոլլան,—դեղը լցնել աչքերը և բաց թողնել։ Մուկը կկուրանա, այլևս ուտելիք չի կարողանա ճարել և սովից կսատկի»։ Հի՛, հի՛, հի՛... Ավելի լավ չէ՞ր հենց տեղնուտեղը ոչնչացնել բռնած մկանը։ Այդպես էլ քո «գյուտը»։ Դա ավելի երկար է, քան եթե վերցնեմ ու պարզապես բաժանեմ սովորական ձևով։

— Ա՛յ, տեսնու՞մ ես, որ սխալվում ես,—բարկացավ մեծ եղբայրը։—Կանոնը բացատրելը մի քիչ երկար է տևում, ճիշտ է, բայց գործածելը շատ հեշտ է։ Չէ՞ որ դու մի երկու ժամ առաջ տեսար դա։ Բացի դրանից իմ կանոնը կարելի է շարադրել նաև ավելի կրճատ ձևով։

— Դե ասա տեսնեմ։

եղբայրը։—Եվ ավելի լավ է՝ ստուգենք այն մեծ թիվը։ Ի՞նչպես էր...

Նա փնտրեց սեղանի վրա շաղ եկած թղթերի մեջ, գտավ։

— Ահա՛, 1043։ Բաժանվու՞մ է արդյոք 243230729-ը այդ թվի վրա։ Գտնենք կախարդական թիվը։ Ուրեմն, 1043-ից հանել դրա տասնավորները։— Գարիկը կանգ առավ։— Տասնավորները... Իսկ հարյուրավորնե՞րը, հազարավորնե՞րը...

— Բոլորը։

— Ուրեմն, 1043-ից հանած 104, կմնա 939։ 939-ը բաժանած 3-ի վրա՝ կստացվի 313։ Հիանալի է։

— Ուրիշ ոչինչ,—ժպտաց Վահանը։ —Տեսնու՞մ ես որքան հեշտ է։ Դե ուրեմն միշտ օգտվիր դրանից։ Իսկ հիմա բացատրեմ իմ կանոնի կրճատ ձևը և վերջ։

— Ի՞նչ վերջ,— բացականչեց Գարիկը։ — Բա 7-ով վերջացող թվե՞րը...

— Քիչ մնաց մոռանայի,— գլուխը քորեց Վահանը։ — Ասեմ, ասեմ... Ահա հենց դրան է վերաբերում կես կանոնը։ 7-ով վերջացող թվերի նկատմամբ պետք է վարվել այսպես։ Բաժանելիի միավորներն ու տասնավորները բազմապատկել իրար վրա, օրինակի համար, 47-ի դեպքում 4-ը բազմապատկել 7-ով, կստացվի 28։ Դրան գումարել 5, կստացվի 33։ Ահա հենց դրանով կատարել բաժանելիի միավորները բազմապատկելու և մնացած թվի վրա ավելացնելու գործողությունները։ Այդտեղ արդեն ոչ մի տարբերություն չկա։

— Իսկ ինչու՞ ավելացրիր 5։

— Այդպես է պետք։

— Իսկ եթե... իսկ եթե վերցնենք ոչ թե 47, այլ՝ 67։

— Դարձյալ պիտի ավելացնել 5։

— Բոլո՞ր դեպքերում։

— Այո՛, բոլոր դեպքերում 5։

— Դա շատ հեշտ է, միտքս կպահեմ,— ուրախացավ Գարիկը։

Վահանը վերցրեց մի մաքուր թուղթ և գրեց ամբողջ ֆորմուլը։ Ո՞վ գիտե, առաջին շրջանում Գարիկը դեռ կարող է միտը չպահել, ուրեմն թող ունենա գրավոր.

Իմանալու համար, թե բաժանվու՞մ է արդյոք որևէ թիվ 1-ով, 3-ով կամ 9-ով վերջացող որևէ բաժանարարի վրա, հարկավոր է բաժանարարից հանել դրա տասնավորները, մնացորդը բաժանել բաժանարարի միավորների վրա։ Իսկ 7-ով վերջացող թվերի նկատմամբ հարկավոր է բաժանարարի տասնավորները բազմապատկել դրա միավորների վրա։ Թե՛ 1-ով, թե՛ 3-ով, թե՛ 7-ով և թե՛ 9-ով վերջացող բոլոր թվերի դեպքում, ստացված գումարը հենց հանդիսանում է մեր պահանջած «կախարդական թիվը»։ Ահա հենց այդ կախարդական թվով պետք է բազմապատկել բաժանելիի միավորները, ավելացնել մնացած թվի վրա, այդ գործողությունը կրկնել այնքան անգամ, որքան որ հարկավոր է։

— Եվ դեռ այս հասարակ ֆորմուլան կրճատ ձև է՞լ ունի,— զարմացավ Գարիկը։

— Այո։ Բայց կրճատ ձևը մի տեսակ չէ, այլ՝ չորս տեսակ։ Կուզես՝ կօգտվես դրանցից, կուզես՝ ոչ։ Ա՛յ, օրինակ, 3-ով վերջացող բաժանարարների դեպքում։ Ինչպես անել, որ չմտաբերել վերհիշյալ ֆորմուլան, այլ՝ օգտվել կրճատ ձևից։ Դրա համար հարկավոր է միավորներն ու տասնավորները բազմապատկել իրարով և ավելացնել 1։ Այսպես.

33-ի դեպքում 3-ը բազմապատկել 3-ով, գումարել 1, կլինի 10։

43-ի դեպքում 4-ը բազմապատկել 3-ով, գումարել 1, կլինի 13։

53-ի դեպքում՝ 16։

63-ի դեպքում՝ 19։

Եվ այլն։

— 9-ով վերջացող բաժանարարների դեպքում կրճատ ձևը սրանից էլ հեշտ է,— շարունակեց Վահանը։— Պարզապես պետք է վերցնել հաջորդ տասնավորը՝ առանց զերոյի։ Այսպես.

29-ի դեպքում պետք է վերցնել 30-ը առանց 0-ի, այսինքն՝ 3։

39-ի դեպքում՝ 4։

49-ի դեպքում՝ 5։

Եվ այլն։

— Դժվար չէ նաև 1-ով վերջացող բաժանարարների նկատմամբ կրճատ ձևը։ Քանի որ բաժանել 1-ի վրա՝ կնշանակի թիվը թողնել նույնությամբ, դրա համար մենք կարող ենք բաց թողնել այդ գործողությունը և անել այսպես.— Իմանալու համար, թե որն է 1-ով վերջացող բաժանարարի «կախարդական թիվը», հարկավոր է այդ թվից հանել դրա տասնավորները։ Ուրիշ ոչինչ։

— Իսկ 7-ով վերջացող բաժանարարների դեպքում «կախարդական թիվն» այնքան հեշտ է գտնվում, որ կրճատ ձևի կարիք էլ չկա։ Դա այսպես է.

17-ի դեպքում՝ 1 անգամ 7, գումարած 5։

27-ի դեպքում՝ 2 անգամ 7, գումարած 5։

37-ի դեպքում՝ 3 անգամ 7, գումարած 5։

Եվ այլն։

— Եվ այլն,— կրկնեց Վահանը։— Մինչև միլիարդներ, տրիլիոններ և այլն։ Եթե իմ այս ֆորմուլան քեզ գործնականում էլ պետք չգա, դարձյալ հետաքրքիր է ժամանցի համար, որպես թվերի յուրահատկություններից մեկը։ Հա՛, ի միջի այլոց,— ավելացրեց նա,— իմ այս փոքրիկ գյուտը ոչ մի գաղտնիք չի ներկայացնում իրենից, կարող ես հաղորդել բոլորին, ով սիրում է զբաղվել թվաբանությամբ։






# Ճերմակ մազեր

ՋԱՆՆԻ ՌՈԴԱՐԻ

Ասա ինձ հապա,
Որմնադի՛ր եղբայր,
Քո գլխին որքա՞ն
Ճերմակ մազեր կան:
— Ազնի՛վ բարեկամ,
Դժվար չէ ասել.
Իմ գլխին այնքան

Կան ճերմակ մազեր,
Որքան ձեռքերով
Իմ այս կոշտացած
Շինել եմ շենքեր՝
Երկնքին հասած:

Իսկ դուք, ուսուցի՛չ,
Կարո՞ղ եք ասել,
Թե որքան ունեք
Ճերմակած մազեր:
—Դժվար է հաշվել,
Սիրելի որդյակ,
Ամեն աշակերտ
Մի մազ է ճերմակ.

Դ… ասա, պապի՛կ,
Իմ հին բարեկամ,
Քո գլխին որքա՞ն
Ճերմակ մազեր կան:
—Է՜հ, ի՞նչ ասեմ քեզ,
Իմ անգին որդյակ.
Այնքան կունենամ
Ես մազեր ճերմակ,
Որքան հեքիաթ եմ
Հորինել կյանքում,
Թոռնիկիս պատմել
Գիշերներն անքուն:

Ռուս. թարգմ. Ս. ՄԿՐՏՉՅԱՆ

# ԱՐՋՆ ԱՆՏԱՌՈՒՄ

ԼԵՎ ԿՎԻՏԿՈ

Ման է գալիս արջն անտառում,
Պտույտ տալիս արջն անտառում...
Ցուրտ է, ցուրտ է արդեն դրսում.
Ցուրտ անտառում արջն է մրսում:

Անտառն արդեն թափուր ու մերկ,
Ո՛չ թռչուն կա, ո՛չ բույն ու երգ,
Սոսկ քամին է շաչում, փչչում,
Դեղին տերևները քշում,
Հրում այստեղ,
Ցրում այնտեղ:

Ծառանում է արջը, կանգնում,
Երկու թաթը առաջ մեկնում.
—Քամի՛, քամի՛, շուտ բեր ամպեր,
Ամպը լինի թող ձյունաբեր,
Թող ձյուն իջնի ճերմակ-ճերմակ,
Թուփ ու ծառին լինի վերմակ:

Քամին արդեն՝ կարծես խաղում,
Չի սառեցնում, չի սառցանում.
Ամպը վերից ձյուն է մաղում,
Քամին ձյունն է չորս կողմ ցանում:
Հանդարտ է, տե՛ս,
Էլ չկա հողմ,
Փետուրի պես
Ձյուն է չորս կողմ:
Տիրեց խաղաղ մի լռություն.
Վերմակի պես փռված է ձյուն:
Գիշերն իջավ ձյունի վրա,
Իսկ արջն ու՞ր է, արջն ու՞ր կորավ...
Արջուկը էլ չի քրթմնջում,
Արջուկը էլ չի տրտնջում, —
Քնած է իր տաքուկ որջում:

Թարգմ. Վ. ՆՈՐԵՆՑ

# ՍՈՎՈՐԵՆՔ ԴԱՀՈՒԿՆԵՐՈՎ ՍԱՀԵԼ

Տ. ՍՏԵՓԱՆՅԱՆ

## ՄԻ ՔԱՆԻ ԽՈՐՀՈՒՐԴՆԵՐ

Դահուկները պետք է դուրս բերել շենքից և պահել օդում, այլապես սառույցը կդժվարացնի դահուկների սահունությունը: Երբեք դահուկները մի՛ դրեք վառարանի, խարույկի մոտ, տաք սենյակում: Քսուքը դահուկներին պետք է քսել յուրաքանչյուր զբոսանքից կամ պարապմունքից առաջ, այլապես ամբողջ ձմեռվա ընթացքում դահուկները պիտանի չեն լինի: Եթե դահուկներն ունեն «Ռիտաֆելդ» տիպի ամրակապեր, ապա, որպեսզի կոշկատակի առջևի մասի սեպերի տեղերը չընդլայնվեն, լավ կլինի սեպերի տեղերում կոշկատակի վրա ալյումինե կամ պղնձե թիթեղիկներ ամրացնել, պահպանելով ճիշտ տեղերը: Թիթեղիկները մեխերով ամրացվում են ռանտի երկու կողմերին, իսկ առջևում թիթեղիկի ծայրը ծալվում է ռանտի վրա:



## ԱՌԱՋԻՆ ՔԱՅԼԵՐԸ

Դահուկներով քայլել կարելի է սովորել մի քանի պարապմունքի ընթացքում: Որպեսզի կարողանալ լավ և արագ սահել ու միաժամանակ քիչ էներգիա վատնել, հարկավոր է մանրակրկիտ կերպով սովորել ցանկացած պայմաններում ու տեղանքում դահուկներով սահելու տեխնիկան: Անհամբեր սկսնակը միանգամից ձեռքը գցում է ամեն ինչի և ոչինչ չի սովորում: Դահուկորդի առաջին շարժումները պետք է լինեն առանց ձողափայտերի օգնության, քանի որ դրանք ոչ թե նրա համար են, որպեսզի վայր ընկնելու ժամանակ հենարան հանդիսանան, այլ որպեսզի նրանցով արագացվի շարժումը:

Հարկավոր է դահուկներով ոչ միայն քայլել, այլև՝ սահել: Պետք է կարողանալ մարմնի ծանրությունը տեղափոխել սահող ոտքի վրա, իսկ մարմնի ծանրությունից ազատ մնացած ոտքի մկանները թուլացնել:

Դահուկների վրա երկու ոտքերով հավասարակշռված շարժումներ կատարելու առաջին դասերը անպայման պետք է անցնեն առանց ձողափայտերի: Առաջին պարապմունքները պետք է կազմակերպել հարթ տեղում: Կարիք չկա սահել թեք վայրերում, քանի որ ապագա հաջողությունը կախված է առաջին անհաջողություններից ու հիասթափությունից: Ցանկալի է նշված վայրերում շարժվել փորձված դահուկորդի թողած դահուկահետքերով, իսկ եթե այդպիսիք չկան, ապա ինքդ պետք է բացես դահուկահետքեր, հիշելով, որ դահուկները միմյանցից հեռու պետք է լինեն 5—8 սանտիմետր:

Եթե կողքից նայելու լինենք դահուկորդի վրա, ապա կտեսնենք, որ նա սկզբում հրվում է ձախ ոտքով, մարմնի ծանրությունը տեղափոխում աջ ոտքի վրա և սահում այդ ոտքով: Ապա հրվում է աջ ոտքով և սահում ձախ դահուկով: Եթե շարժումները կատարենք հրահանգով, ապա կստացվի այսպես. «մե՛կ»՝ հրում, «երկո՛ւ-ո՛ւ-ո՛ւ»՝ սահում, «մե՛կ, երկո՛ւ-ո՛ւ-ո՛ւ», և այսպես շարունակ: Ոտքերի շարժմանը զուգընթաց պետք է շարժել ձեռքերը: Քանի դեռ չեք սովորել ձեռքերի օգնությամբ ճիշտ հավասարակշռվել, սահող քայլերը չպետք է երկար լինեն: Հիշեցեք՝ երբ առաջ է տարվում աջ ոտքը, ապա միաժամանակ իրանը թեքվում է մի փոքր աջ, իսկ ձախ ձեռքը տարվում է առաջ: Իսկ երբ առաջ եք տանում ձախ ոտքը, ապա իրանը մի փոքր թեքվում է ձախ, իսկ աջ ձեռքը տարվում է առաջ: Բավական է մի քանի պարտադիր պարապմունք, և որից հետո կարելի է վերցնել ձողափայտերը և սովորածն ամրապնդել: Սկսնակ դահուկորդի համար գլխավորը չհուզվելն ու չամաչելն է: Պետք չէ շտապել և կատարել ավելորդ շարժումներ: Հենց առաջին քայլերից պետք է ձգտել, որ ոտքով հրումը ուժեղ լինի, թեկուզ ըսկզբնական շրջանում սահումը կարճ ստացվի: Այդ բանին կարելի է հասնել, եթե դահուկորդը դաշտի վրա հենվի սկզբում ամբողջ ոտնատակով, իսկ հետո, բարձրացնելով կրունկը, հրումն ավարտի, ասես ամբողջ ուժը ոտքի մատների ծայրերի մեջ ներդնելով: Ցանկալի է առանց դահուկների այդ վարժությունը նախապես կրկնել տանը կամ սպորտային դահլիճում:

Սկզբնական մարզումները պետք է անցկացնել խմբով: Ընկերներդ կարող են ժամանակին նկատել քո սխալները և ցույց տալ, թե ինչպես պետք է ճիշտ քայլել: Քեզ համար էլ օգտակար է տեսնել, թե մյուսներն ինչպես են սահում: Բավական է

խախտել ոտքերի ու ձեռքերի շարժման ճիշտ ռիթմը, կխախտվեն ուղղագծությունն ու հավասարակշռությունը։ Հարկավոր է ժամանակին գտնել սխալները և արագ վերացնել։ Ուղղագիծ դահուկահետքերը պետք է ընտրել 150—200 մետր տարածություն ունեցող հարթ վայրում։ Փոքրիկ, սահող քայլերով դուք հասել եք դահուկահետքերի ծայրին, որտեղից պետք է դարձում կատարել։ Իսկ ինչպե՞ս։ Դարձումը կատարում են հետևյալ ձևով՝ կանգնեք ուղիղ, ծանրության կենտրոնը թեթևակիորեն տեղափոխեք ձախ ոտքի վրա (Նկ. 1), իսկ աջ ոտքի ծայրը բարձրացրեք ու, գետնից կտրելով դահուկը, դրեք 15—25 սանտիմետր դեպի աջ։ Դրանից հետո մարմնի ծանրությունը գցեք աջ ոտքի վրա, իսկ ձախ դահուկը արագ շարժումով բերեք աջի մոտ։ Դա կրկնվում է այնքան ժամանակ, մինչև 180 աստիճան շրջադարձ եք կատարում։ Ձողափայտերի օգնությամբ շրջադարձը կատարվում է հետևյալ կերպ. մարմնի ծանրությունը հենեք երկու լայն դրված ձողափայտերի վրա, իսկ դահուկները հերթականությամբ տեղափոխեք։ Տիրապետելով հավասարակշռությանը, հետագայում կարող եք դարձումը կատարել մեկ կամ երկու ցատկով, ձողափայտերով կամ առանց դրանց։




Արդեն դուք սովորել եք դահուկներով սահել, ձողափայտերով հրվել, դարձումներ կատարել։ Այժմ պետք է սահել բլրակից։ Սկսնակի համար անգամ փոքրիկ բլրակը կարող է հսկայական թվալ։ Ես խորհուրդ կտայի սկզբում այնպիսի վայր ընտրել, որտեղից վայրէջք կատարելը հաճելի լինի։ Հետո հարկավոր է մեծացնել լանջի թեքությունն ու երկարությունը և սկզբում վայրէջք կատարել առանց ձողափայտերի, իսկ հետո՝ ձողափայտերով։ Սարից վայրէջք կատարելիս հիմնական կեցվածքը պետք է լինի հետևյալը՝ ոչ շատ նստել ծալված ծնկների վրա։ Դա մարմինը դարձնում է ճկուն և հեշտացնում հավասարակշռության պահպանումը։




Ձողափայտերով վայրէջք կատարելու ժամանակ ոչ մի դեպքում ձողափայտերը առաջ մի՛ պարզեք, մտածելով, թե ընկնելիս կհենվեք դրանց վրա։ Հենումը, ինչ խոսք, չի ստացվի, իսկ դուք անպայման վնասվածք կստանաք։ Հարկավոր է ձողափայտերը փոքր-ինչ ներքևից բռնել, օղակները մի քիչ վեր բարձրացնել և պահել հետևում։ Վայրէջքի ժամանակ երբեք չի կարելի կրունկները վեր բարձրացնել։ Եթե անհրաժեշտություն չկա, մարմնի ծանրությունը մեկ դահուկից մյուսի վրա մի՛ տեղափոխեք, քանի որ կարող է շրջադարձ տեղի ունենալ։ Գոյություն ունեն վայրէջքի նաև այլ եղանակներ (Նկ. 2, 3, 4)։ Սկսնակների համար ընկնելն անխուսափելի է։ Ուստի հարկավոր է սովորել ճիշտ ընկնել։ Ընկնելու ժամանակ չի կարելի հենվել ձեռքերի թաթերի վրա, ձեռքերը կողմ տարածել որևէ բանից բռնելու համար։ Դրանք չեն օգնի։ Ընկնելու պահին հարկավոր է ձեռքերը սեղմել կողքերին, ընկնել աջ կողմի վրա, փոքր-ինչ ետ, իսկ երբ մարմինը կդիպչի ձյանը, ոտքերը պետք է բարձրացնել։ Ձողափայտերով վայրէջքի ժամանակ նույնպես հարկավոր է ընկնել կողքի վրա, մի փոքր ետ։ Աջ ձեռքը ձողափայտի հետ պետք է տարածել մի կողմ, որպեսզի մարմինը չընկնի ձեռքի վրա։

Սովորաբար սկսնակի համար շատ հաճելի է առանց վայր ընկնելու սարալանջով սահել մինչև ստորոտը։ Իսկ ինչպե՞ս վեր բարձրանալ։ Եթե լանջը փոքր թեքություն ունի, կարելի է ձողափայտերը չօգտագործել, այլ դսսլ թևերի տակ, դահուկների ծայրերը մի փոքր բարձրացնել և վստահորեն առաջ գնալ։ Եթե լանջը շատ թեք է, պետք է բարձրանալ զիգզագներով։

Թեքությունները կարելի է հաղթահարել երկու եղանակով. եթե թեքությունը շատ չէ՝ «եղանաձև», իսկ եթե շատ է՝ «աստիճանաձև»։

Եթե «եղանաձև» վերելքի ժամանակ հարկավոր է բարձրացնել միայն դահուկների ծայրերը, ապա «աստիճանաձև» վերելքի ժամանակ պետք է հետևել, որպեսզի դահուկների հետևի մասերը ավելի շատ բարձրանան, քան ծայրերը և դահուկները դնել սարալանջի նկատմամբ հորիզոնական դիրքով (Նկ. 5, 6)։

Երբ լրիվ կյուրացնեք ուղիղ գծով վայրէջքները, սկսեք սովորել դեպի աջ ու ձախ դարձումներ և վայրէջքի պահին արգելակում կատարել։ Այդ շարժումները կարելի է կատարել մի քանի եղանակով։ Ահա դրանցից ամենապարզը։ Որպեսզի չշփոթվել և վայր չընկնել, հարկավոր է դարձում կատարել մարմնի ծանրությունը փոխադրելով այն ոտքի վրա, որը պետք է ձգել և թեթևակիորեն փոքր-ինչ մի կողմ տանել։ Հե-

տո այդ ոտքին պետք է մոտեցնել մյուսը: Դահուկների տեղափոխության հերթականությունը շարունակվում է այնքան ժամանակ, մինչև ստացվի ցանկացած դարձումը: Դարձման ժամանակ հարկավոր չէ ձողափայտերով ավելորդ շարժումներ կատարել (Նկ. 6):

«Կիսախոփով» դարձումը կատարում են հետևյալ կերպ. մարմնի ծանրությունը փոխադրում են դահուկներից մեկի վրա, իսկ մյուս դահուկը առաջ են տանում: Եթե ձեզ հարկավոր է թեքվել դեպի աջ, մարմնի ծանրությունը փոխադրում եք աջ ոտքի վրա և առաջ եք տանում ձախ ոտքը: Դեպի ձախ թեքվելու համար կատարում եք հակառակ: Սարն ի վար սահելու ժամանակ հաճախ հարկ է լինում դանդաղեցնել արագությունը,




արգելակել, իսկ երբեմն էլ կանգ առնել: Արգելակման ամենից պարզ եղանակը «խոփն» է, երբ դահուկների ծայրերը միացվում են իրար, իսկ վերջնամասերը բացազատվում (Նկ. 7): Դահուկներին այդպիսի դիրք տալու համար հարկավոր է ծնկները իրար միացնել, իսկ կրունկները միմյանցից հեռացնել:

Ինչպես վայրէջքի, այնպես էլ արգելակման ու դարձման ժամանակ դահուկորդը միշտ հավասարակշռությունը պետք է պահպանի ամբողջ մարմնով: Դա օգնում է արագ կերպով շարժման ուղղությունը փոխելուն:

Դահուկորդի վարպետությունը որոշում են ոչ միայն մրցման ժամանակ նրա ցույց տված արդյունքով, այլև թե՛ պարապմունքների և թե՛ զբոսանքների ժամանակ նրա հագած սպորտային զգեստով: Իհարկե, խոսքը դահուկային թանկարժեք զգեստների մասին չէ: Ահա մի օրինակ: Դահուկներով սահում են երկու աղջիկ: Նրանցից մեկը հագել է բաճկոնակ ու նեղ շալվար, որի վրայից ձյունը հեշտությամբ կարելի է թափ տալ և որով հեշտ է սահել: Իսկ մյուսը հագել է լայն շալվար, որն անընդհատ ձյանը քսվելով թրջվել է ու ծանրացել, իսկ շալվարի վրայից էլ՝ յուբկա: Պարզ է, որ երկրորդ աղջիկը բոլորովին էլ սպորտային տեսք չունի: Պատահում են այնպիսի դահուկորդներ, որոնք շոգ ժամանակ հանում են բաճկոնակը ու կապում գոտկատեղին, իսկ դրա թևքերը կախ են ընկնում: Դա պարզապես տգեղ է ու վանող:

Պատանի դահուկորդի համար սպորտի վարպետ դառնալը հեշտ չէ: Եթե անգամ նա շատ շնորհալի է, բայց տեխնիկան սովորել է մակերեսորեն, նույն վարժությունը չի կրկնել բազմաթիվ անգամ, հաջողության հասնել չի կարող:



Շապիկի առաջին էջը՝
Նկ. Ս. ՍՏԵՓԱՆՅԱՆԻ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Այս համարի հետ տրվում է հավելված՝ հոկտեմբերիկների համար:

Խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝

ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ՍԼ. (գեղարվեստական խմբագիր). ԵՍԱՅԱՆ Վ., ԽԱՆՋՅԱՆ Գ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Լ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ Վ., ՕՀԱՆՅԱՆ Ա.

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир Банаки, № 41.
Հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06։

ՎՖ 02321 Պատվեր՝ 1650։ Տպաքանակ՝ 8000 Տպագրական 5 մամուլ։ Ստորագրված է տպագրության 6/XI 1962 թ.։ ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան 91։

Գինը 20 կ.






Նկ. Գր. ԽԱՆՋՅԱՆԻ

# ԾԻԾԵՌՆԱԿ

«ՊԻՈՆԵՐԻ» ՀԱՎԵԼՎԱԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻԿՆԵՐԻ ՀԱՄԱՐ



# Իմ ծիծեռնակը

Հ. ՍԱՀՅԱՆ

Նկ. Ս. ՍՏԵՓԱՆՅԱՆԻ

Երբ ամեն անգամ ձյուներն են լալիս,
Եվ գետ է դառնում փոքրիկ գետակը,
Իմ ծիծեռնակը թևին է տալիս,
Իր բույնն է գալիս իմ ծիծեռնակը։

Երգում է ձորում, երգում է քիվին,
Երգով է լցնում երկինքն ու բակը,
Մի մեծ գարուն է բերում իր թևին,
Իր փոքրիկ թևին իմ ծիծեռնակը։

Իմ ծիծեռնակը բանբերն է գարնան,
Դեսպանն է գարնան ու պատվիրակը,
Գարնան կոչնակն է ծիվ-ծիվ, ծլվլան,
Ծիվ-ծիվ, ծլվլան իմ ծիծեռնակը։

Նրա թևի տակ հովիտն է ծաղկում,
Ծաղկում են այգին, մարգն ու ծմակը,
Սև շանթի նման սև ամպին զարկում,
Սև ամպն է հեղքում իմ ծիծեռնակը։

Երգում է, և մեզ միշտ նոր է թվում
Նրա հին երգի հին եղանակը,
Իմ ծիծեռնակը երգով է ծնվում,
Երգով է չվում իմ ծիծեռնակը։

Ամբողջ ամառը երգում է, երգում,
Եվ կյանքով է լի երգի երակը,
Երգով տխրության օրենքն է հերքում
Եվ չի հեկեկում իմ ծիծեռնակը։



Ամեն, ամեն օր մի ամբողջ աշխարհ
Իմ տունն է բերում ու իմ սենյակը
Եվ իմ սրտի հետ հրճվանքով անխառ
Խոսում է անճառ իմ ծիծեռնակը:

Մթան հետ գալիս նստում է բնում,
Աչքերում պահած ողջ մոլորակը.
Մտքի մեջ իր հին երգն է կրկնում,
Երգով է քնում իմ ծիծեռնակը:

Ձագեր է հանում, փայփայում, սնում,
Նոր հրճվանքով է լցնում իր կյանքը.
Եվ աշնանն, ավաղ, թողնում է գնում,
Թողնում է գնում իմ ծիծեռնակը:

...Բայց ահա եկավ «Ծիծեռնակը» նոր՝
Թևերի վրա ձմռան ճերմակը.
Մեզ հետ է ահա և տարին բոլոր
Մեզ հետ կմնա այս «Ծիծեռնակը»:

Ձմեռվա միջով ճամփա է հարթում,
Մեր տունն է մտնում ու մեր սենյակը
Եվ մանուկներին խելք է խրատում
Օրնիբուն արթուն այս «Ծիծեռնակը»:

Եվ նրա համար մեկ են շոգ ու ձյուն.
Գարուն է տարվա չորս եղանակը.
Մեզ ամեն անգամ նոր ուրախություն,
Նոր երգ կբերի այս «Ծիծեռնակը»:

Բույն տանք մեր սրտում այս «Ծիծեռնակին»
Ու տանք մեր սրտի սերն ու կրակը...
Եվ նա ջերմություն կտա մեր սրտին,
Ձյուն-ձմռան ցրտին այս «Ծիծեռնակը»

Սիրեք, մանուկներ, ամեն ժամանակ
Ձեր խելքի, մտքի այս նոր ձեռնարկը.
Ձեզ չի պատմելու ոչ մի ծիծեռնակ,
Ինչ որ պատմում է այս «Ծիծեռնակը»:

Հիշեցեք խելոք խոսքերը նրա,
Եվ դա թող լինի ձեր խղճի պարտքը
Ձեր սրտի և ձեր սեղանի վրա
Թող միշտ ծլվլա այս «Ծիծեռնակը»






Վ. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ

Անտառապահն իր տնակի առաջ մի փոքր հողամաս ուներ: Նա հողամասում ցանել էր կաղամբ, բիբար, լոբի, գազար: Ինքը ցանել էր, ինքն էլ հավաքեց, տարավ լցրեց մառանը և սկսեց քիչ-քիչ ուտել: Ինքն էր ուտում, կինը, մեկ էլ իրենց երեխան:

Երբ ծույլ ես, շատակեր պիտի չլինես, թե չէ գլխիդ փորձանք կգա: Եվ ահա թե ինչ պատահեց ծույլ ու շատակեր Նապաստակին, որի աչքերն այն ժամանակ դեռ շիտակ էին:

Ցրտերն ընկան, անտառի կերը պակասեց, և Նապաստակն սկսեց պտըտվել տնակի շուրջը: Նա դարձել էր համարձակ, որովհետև անտառապահի շունն արդեն ծերացել էր, աչքերը լավ չէին տեսնում, քիթն էլ, որ ժամանակին չէր մաքրում, ոչ հոտ էր առնում, ոչ՝ բուրմունք:



Մութն ընկնելուն պես Նապաստակը մոտենում էր դռանը և բանալու անցքից նայում, թե ինչպես անտառապահը, կինը և երեխան սեղանի շուրջը նստած, ուտում էին կաղամբ, բիբար, լոբի, գազար: Նայում էր, աչքը մնում ուրիշի ուտելիքի վրա. մեկ էլ մտածում էր, ինչպե՞ս անի՝ մտնի մառանը, ուտի, ուտի, կշտանա: Մի օր նայեց ու մտածեց, երկրորդ օրը նայեց ու մտածեց, երրորդ օրը... Ուշացած անտառապահը տուն հասնելիս, ի՞նչ տեսնի... Նապաստակը բանալու անցքից ներս է նայում: Անտառապահը այնքան զարմացավ, որ մոռացավ հրացանը ուսից իջեցնի ու, թըը՛խկ, կրակի անպիտան Նապաստակի վրա: Նա շատ զարմացավ և զարմանքից քահ-քահ ծիծաղեց: Առանց մի աչքը ուտելիքի սեղանից կտրելու, Նապաստակը մյուս աչքով կտրուկ վերև նայեց՝ տեսնի, թե ով



Նկ. Վ. ԲԱՍՏՐԻԿՈՎԱՅԻ

է ծիծաղում. Տանտիրոջը ճանաչեց թե չէ, չորս ոտ ուներ, չորսն էլ փոխ տռավ ու, վը՜զզ, դեպի անտառի խորքը: Այդ դեպքից հետո Նապաստակի աչքերը ծուռ մնացին, և աշխարհը նրան սկսեց թարս ու շիտակ երևալ:

Մինչև գարնան բացվելը, Նապաստակը նիհարեց, նիհարեց, բայց մի կերպ դիմացավ: Մի օր էլ, երբ խաղաղ լճից ջուր էր խմում, նա տեսավ իր արտացոլումը՝ սպիտակ մորթին, երկար ականջները, սուր դունչը և... կարմիր աչքերը... աչքերը շլդիկացել էին:

Տեղն է դրան. ո՞վ էր ասում՝ աչք դնի ուրիշի վաստակի վրա:

# ՏՈՆԱԾԱՌԻ ՀԱՆԴԵՍՈՒՄ

ԳՐ. ԵՂԻԿՅԱՆ

Նկ. Ա. ԳԱԼԵՆՑԻ

Էհե՜յ, ո՞ւր եք լռել, ո՞ւր.
Ձմեռ Պապն է եկել հյուր,
Շրջան կազմեք, պար բռնենք,
Երգենք, ծափ տանք ու թռնենք։

Մեջտեղ արի, Զարուհի,
Այ իմ Ձյունիկ-պարուհի,
Ի՞նչ Նոր տարի առանց քեզ,
Ուրախացրու մի քիչ մեզ։

Բա դո՞ւ, շլդիկ փափկամա՞զ,
Ինձ մոտ արի վազեվազ,
Ցույց տուր ծուռտիկ քո պարը,
Թող զարմանա աշխարհը։

Ի՞նչ ես քնել, այ բրդոտ,
Վեր կաց, դու էլ արի մոտ,
Եվ դու, փոքրիկ իմ սկյուռ,
Կաղին կտամ քեզ մի բուռ։

Դուք էլ եկեք, գայլ, աղվես,
Միայն կարգին պահեք ձեզ,
Նոր տարի է, Նոր տարի,
Եղեք խելոք ու բարի։

Դե՜հ, հավաքվեք, պար բռնենք
Երգենք, ծափ տանք ու թռնենք
Որ բոյ քաշենք մեծանանք,
Այսպես փոքրիկ չմնանք։





# Որքան համեղ է

Լ. ԲԱԼԱԳՅԱՆ

նկ. Հ. ՄԻՆԱՍՅԱՆԻ

Բոլոր երեխաները ախորժակով ուտում էին, միայն Համիկը իր բաժին կաթնովին ձեռք չտվեց։ Նա նույնիսկ չգիտեր, համե՞ղ է, թե՞ ոչ։ Չգիտեր, բայց չէր ցանկանում ուտել։ Ընկեր Հայկուշը նայեց Համիկի լիքը ափսեին և նրան ոչինչ չասաց. միայն երեխաներին մի պատմություն պատմեց.

— Լինում է, չի լինում, մի փոքրիկ աղջիկ է լինում, անունը Նվարդ։ Նա այնքան շատ է սիրում կաթնով, որ ամեն օր նախաճաշին ուտում է մի լիքը ափսե. Դրա համար էլ նրա թշիկները կարմրում են. նա դառնում է մի թմբլիկ, սիրունիկ աղջիկ։ Մի անգամ այդ Նվարդիկը իր մայրիկի հետ դուրս է գալիս զբոսանքի։ Դու մի ասա, մի ուրիշ տղա էլ իր մայրիկի հետ է դուրս գալիս զբոսնելու։ Ճանապարհին այդ փոքրիկ տղան շատ քաղցածանում է. «Ա՜յ, թե մի բուլկի լիներ ոնց կուտեի» — մտածում է նա։ Ահա այդ միջոցին հեռվից երևում է Նվարդիկը։ Փոքրիկ տղան նայում է, նայում և իրեն թվում է, թե Նվարդիկը մի կլորիկ բուլկի է, վազում է, որ նրան կուլ տա, բայց այդ միջոցին Նվարդիկը բարձր ձայնով ասում է.

— Փոքրի՛կ տղա, փոքրի՛կ տղա, ես բուլկի չեմ, ես Նվարդիկն եմ, ինձ մի՛ կեր։

Ճիշտ որ, փոքրիկ տղան տեսնում է, որ ինքը սխալվել է. Նվարդիկը այնպես թմբլիկ-կլորիկն է, այնպես կարմրաթշիկ-սիրունիկ, որ թվում է, թե համեղ բուլկի է։

Համիկը ուշադիր լսեց դաստիարակչուհուն, հետո կամացուկ վերցրեց գդալը և մի լիքը բաժին տարավ բերանը։

Որքան համեղ էր կաթնովը...

# Միայն թե շուտ մեծացիր

Ս. ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ

Բայ-բա՜յ, իմ լավ եղբայրիկ,
Դե հերիք լաս, դե հերիք։
Կաթ ես ուզում, կաթ կտամ,
Դուրս կտանեմ, ման կտամ.
Սա էլ զնգլիկներդ, տե՛ս,
Խաղա՝ ինչքան որ կուզես,
Միայն թե շուտ մեծացիր,
Ուժեղ տղա դու դարձիր,
Որ երբ ձմռանը նորից
Ձնագնդով խփեն ինձ,
Դու ինձ մենակ չթողնես,
Չար տղերքից պաշտպանես։



Նկ. Մ. ՊԵՏՐՈՍՅԱՆԻ

# ԵՐԿՈՒ ՔՈԹՈԹ

Ն. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ



Երկու չար քոթոթ
Առած փայտ ու մուրճ.
Առվակի վրա
Կապում են կամուրջ:
Մեկը վազում է
Քարի ու մեխի,
Մեկը սարքում է
Շաղախը ցեխի:
Բայց դեռ չավարտած
Կամուրջը լրիվ,
Քոթոթներն հանկարծ
Գցում են կռիվ:
Մեկն ասում է.— Ես
Գործ շատ եմ անում,
Կամուրջը լրիվ
Ինձ է պատկանում:—
Մյուսն էլ հատու
Զարկերով մուրճի,
Ջարդում է ամուր
Փայտը կամուրջի:



Ինչու՞ ջուր անցավ
Աշխատանքը ձեր,
Հասկացա՞ք մի բան,
Անհաշտ քոթոթներ:






## ՏՈՆԱԾԱՌԻ ՀԱՄԱՐ

Սիրելի երեխաներ, դուք, իհարկե, գիտեք, որ տոնածառին շքեղություն և գեղեցկություն են տալիս ոչ միայն փայլուն խաղալիքներն ու լապտերները: Հաճախ ծառի վրա շատ խաղալիքներ կան, բայց ծառը հարուստ չէ, կարծես մերկ է երևում: Նրան ավելի շքեղ տեսք են տալիս թղթե ժապավենները, ծաղկաշղթաները և զանազան այլ խաղալիքներ:

Փորձենք պատրաստել դրանցից մի քանիսը:











Ուրեմն, սեղանին դրեք տարբեր գույների բարակ (ծխախոտի թղթի բարակության) թուղթ, ստվարաթուղթ, մկրատ, սոսինձ, կոշտմազ վրձին և անցեք գործի:

Վերցրեք 10 սմ. լայնությամբ և նույնքան երկարությամբ մի թուղթ և ծալեք չորստակ: Ապա ծալեք անկյունագծով (նկ. 1): Անհրաժեշտ է ունենալ 2-րդ նկարում տրված ձևանմուշի մեկ օրինակը ստվարաթղթից կտրված:



Ձևանմուշը դրեք անկյունագծով ծալված թղթի վրա (նկ. 3), եզրագծեք, ապա կտրեք: Թղթի բարակությունը ձեզ հնարավորություն կտա













միանգամից 4—6 հատ կտրել։ 10—20 զույգ պատրաստելուց հետո, մեկ ծաղիկը մյուսին միացրեք 4 ծայրերից՝ ինչպես ցույց է տրված 4-րդ նկարում, իսկ երբ զույգերը պատրաստ կլինեն, դրանք իրար միացրեք միայն կենտրոնից։










Վերջում ծաղկաշղթայի կենտրոնից թել անցկացրեք՝ կախելու համար։ Նույն ձևով կարելի է պատրաստել այլ ծաղկաշղթաներ՝ փոխելով ստվարաթղթից պատրաստած ձևանմուշը։

Բարակ, գունավոր թղթերից կարելի է պատրաստել նաև այլ տեսակի ծաղկաշղթա (նկ. 5)։ Անհրաժեշտ է նախ պատրաստել ձևանմուշը (նկ. 6), որը պետք է դնել երկտակ ծալած թղթի վրա, եզրագծել այն և կտրել, որից հետո թուղթը այսպիսի տեսք կունենա (նկ. 7)։ 20—25 հատ կտրելուց հետո, հագցրեք մեկը մյուսի մեջ, և ծաղկաշղթան պատրաստ է։

Գեղեցիկ լապտեր կամ անիվ կարելի է պատրաստել 12—10 սմ. չափսի գունավոր թղթից։ Թուղթը պետք է ծալել երկտակ (նկ. 8), ապա եզրերը ծալել 5 մմ. լայնությամբ (նկ. 9) և կտրել այնպես, որ հավասար լայնությամբ շերտիկներ ստացվեն (նկ. 10)։ Շերտիկներից վերջինը կտրվում է՝ բռնակ պատրաստելու համար։ Վերջում պետք է սոսնձել թղթի 4 ծայրերը և բռնակը (նկ. 11)։




Նույն ձևով կարելի է պատրաստել նաև անիվ։ 12-րդ




նկարին նայելով՝ ինքներդ գուշակեցեք նրա պատրաստման եղանակը։

Սիրելի երեխաներ, դուք կարող եք հաստ թուղթը երկու կողմից գունավոր թղթով սոսնձել և ապա զանազան գազանների, տնային կենդանիների, թռչունների ուրվագծեր նկարել և կտրատել։ Դրանք նույնպես կհարստացնեն ձեր տոնածառը։

Վերջապես, հիշեցեք նաև աշխատանքի ուսուցման ժամերին ձեր պատրաստած զարդարանքներն ու խաղալիքները։

*Ռ. ՄԱՏԻՆՅԱՆ*

*Նկ. Ա. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ*
























Ես ապրում էի իմ ընկերուհիների հետ, Համիկենց այգում: Ինչքա՜ն լավ էր այնտեղ, մեզ հետ կային նաև ուրիշ ծաղիկներ, մեզանից հասակով: Նրանք շատ էին գոռոզ, արհամարհում էին մեզ (չէ՞ որ մենք շատ էինք փոքր) և աշխատում էին ծածկել իրենց տերևներով: Ես այնպե՜ս էի վիրավորվում, բայց հենց որ տեսնում էի արևի ժպտուն դեմքը, բոլորը մոռանում էի: Ինչքա՜ն բարի է արևը: Չնայած մենք այսքան փոքրիկ ենք, նա նկատում էր մեզ և ժպտում: Ես ինձ երջանիկ էի զգում:

Մի օր այգի եկավ Սերիկը՝ Համիկի փոքր քույրը: Նա մոտեցավ մեզ և այնպես խորամանկ էր ժպտում, որ ես վախեցա: Նա կռացավ և ձեռքը մեկնեց ինձ. ես դողում էի, բայց հետո նկատեց իմ ընկերուհուն, որն ինձնից ավելի փարթամ և գեղեցիկ էր: Ա՜խ, ինչ չարն է այդ Սերիկը: Նա անխղճորեն պոկեց ընկերուհուս, մի քիչ հոտոտեց և սկսեց ձեռքի մեջ ճմրթել: Այնուհետև փըչացրեց ամբողջ թուփը:

Այդ օրվանից ես շատ անհանգիստ էի, վախենում էի, որ հանկարծ նա գա և ինձ էլ պոկի: Բայց Սերիկի փոխարեն այգի եկավ Համիկը: Նա կանգնեց ինձ մոտ, ձեռքին ինչ-որ գործիք կար: Ես սարսափից դողում էի ամբողջ մարմնով...

«Երևի սա ավելի սարսափելի պատիժ է, քան Սերիկի արածը» — մտածում էի ես:

Համիկը ինձ ամբողջովին հեռացրեց հողից, և ես ուշաթափվեցի: Դրանից հետո (երազի նման եմ հիշում) ինձ դրեց հողով լցված ինչ-որ ամանի մեջ և ջուր տվեց: Սթափվեցի: Բաց արի աչքերս և նայեցի Համիկին: Ինչքա՜ն բարի էին նրա աչքերը, ինչքա՜ն քնքշորեն էին ժպտում:

Հիմա ես ապրում եմ սենյակում: Ոչինչ, այստեղ էլ լավ է: Արևը առաջվա նման, այս անգամ պատուհանից, ժպտում է ինձ: Համիկը այնպես խնամքով է վարվում ինձ հետ, որ ես մոռանում եմ Սերիկին և չեմ տխրում:

Երբ առավոտյան բաց եմ անում աչքերս, տեսնում եմ, որ բոլորն էլ ինձ ժպտում են, իսկ Սերիկը գլուխը կախում է: Ինձ՝ թվում է, թե նա ամաչում է:

ԼՍՖԻՐԱ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

(Նոյեմբերյանի շրջան, Դոշխոլթանի միջնակարգ դպրոց)



Նկ. Ռ. ՄԱՆՈՒԿՅԱՆԻ



# ԾՈՒՅԼԻ ԵՐԱԶԸ




Ա. ԴԱՐԲՆԻ

Ծույլը անկողնում
Քնած է մո՜ւշ-մո՜ւշ։
Աքլորն է կանչում՝
— Վե՛ր կաց... Ու՜շ է, ու՜շ։

Քո ընկերները
Գնացին դասի։
Տեսնողն ի՞նչ կասի։
Ծուղրուղո՜ւ... Հասի՛ր։ —

Մեծ ժամացույցի
Զանգն է ղողանջում։
Բայց կարծես բուրդ կա
Ծույլի ականջում.

Հանգիստ քնած է,
Ոչինչ չի լսում։
«Հինգ» է ստանում
Քաղցր երազում։

Նկ. Ժ. ԱՌԱՔԵԼՅԱՆԻ

# ԹՈՌՆԻԿԻ ՉԱՐՈՒԹՅՈՒՆԸ

(Փոքրիկ պատմվածք ապագայի կյանքից)

ԱԵԴԱ. ԴՈՒԿԱՍՅԱՆ

Նկ. Ս. ԽԱԹԼԱՄԱՋՅԱՆԻ

Պապս մեր գյուղի հանդերի ու դաշտերի ջրի կարգավորողն է։ Ջրանցքների ու առուների հետ նա գործ չունի, ոչ էլ բահի ու քլունգի։ Նա միանգամից անձրևով է ջրում դաշտերն ու այգիները։

Մեր գյուղի ծայրում մի փոքրիկ տնակ է կառուցված։ Պատերը թափանցիկ ապակուց են. ձմեռ ժամանակ ներսը տաք է լինում, իսկ ամռանը՝ զով։ Հենց այդ տնակում էլ դրված է այն սարքավորումը, որի օգնությամբ պապս հարկ եղած դեպքում անձրև է մաղում երկնքից։ Այդ աշխատանքը շատ հեշտ է, դրա համար էլ պապիկին են հանձնարարել։ Մի շաբաթ առաջ պապիկս՝ թե.

— Թոռնիկս, գնանք այգի, տեսնենք ինչպե՞ս են ծառերը, հո ծարավ չե՞ն։

Մենք գնացինք։ Անցանք դաշտերով, մտանք բուրավետ մարգերը։ Պապիկս կռացավ և ուշադրությամբ քննեց հողում դրված ջերմաչափերը։ Նա ասաց.

— Պետք է ջրել, խոնավությունը պակաս է։ Ծառերը ծարավ են։

Մենք տեղ հասանք։ Պապս սեղմեց առաջին կոճակը, հետո երկրորդը, երրորդը։ Նա սեղմեց զգույշ և թեթևակի։ Ցած թափվեցին մանրիկ, հատուկենտ կաթիլներ, հետո համաչափ տեղաց անձրևը։

Ես շատ հաճախ էի ականատես եղել այդ պահերին։ Եվ միշտ էլ հաճույք էի զգում, երբ պապս սեղմում էր կոճակները. սկզբում մեկը, հետո՝ երկրորդը, երրորդը։ Երբ նա սեղմում էր կոճակները, իմ ձեռքերը քոր էին գալիս, այնպես էի ուզում ցուցամա-

տըս մոտեցնել կոճակներին։ Կարծես թե պարզ գուշակում էր իմ մտքերը։ Ամեն անգամ նա վրա էր բերում.

— Տե՛ս, հա՛, ձեռք չտաս։

— Լավ, պապի՛ ջան, — ասում էի ես, — ձեռք չեմ տա։

Սակայն մի օր այնպես ցանկացա սեղմել կոճակները, որ ոչ մի կերպ չկարողա-



ցա ինձ ետ պահել այդ գայթակղությունից։ Հակառակի պես պապիկս մոտակայքում չէր. նա գնացել էր գյուղ հեռուստատեսային հեռախոսով տղայի հետ խոսելու։

— Գնամ տեսնեմ ինչպե՞ս է բալես. հո չի՞ նիհարել, ասաց նա ու դուրս եկավ։

Հորեղբայրս չորս ամիս էր, ինչ գնացել էր։ Նա հյուսիսային բևեռում էր, գիտահետազոտական արշավախմբում։

Պապիկիս գնալուց կես ժամ հետո, ես մոտեցա փայլուն սարքավորմանը։ Սկզբից սեղմեցի առաջին կոճակը, հետո երկրորդը, երրորդը...

Իսկ հետո սեղմեցի նաև չորրորդ կոճակը։

Ես սեղմեցի շատ ուժեղ, մտածելով, որ փոքր եմ, պետք է այնպես սեղմեմ, որ պապիկիս չափ ուժ տամ։

Հանկարծ այնպիսի հեղեղ տեղաց, որ ես գլուխս կորցրի։ Անձրևի խոշոր կաթիլները կոկռացնում էին ապակյա կտուրը։ Ես տեսնում էի, թե ինչպես պատերով հոսում էին ջրի առվակները։

«Դաշտերը, այգիները հիմա ի՞նչ վիճակում են, — սարսափահար մտածեցի ես։ — Ամեն ինչ արմատախիլ կլինի»։

Քիչ էր մնում լաց լինեի։ Մեկ մի կոճակն էի սեղմում, մեկ՝ մյուսը։ Սակայն իզուր։ Ես, գլուխս կորցրած, չգիտեի ինչ անել, երբ ապակյա տան բակում վայրէջք կատարեց ուղղաթիռ տաքսին։ Վազելով ներս մտավ պապիկս և ինչ-որ պտուտակներ ամրացնելով, հեղեղը դադարեցրեց։ Նա հևասպառ նստեց աթոռին և ասաց.

— Լավ էր, որ դու սեղմել էիր նաև չորրորդ կոճակը...

Ես զարմացած ու վախեցած նայեցի նրան։ Ուզում էի հարցնել, թե ինչո՞ւ, բայց վախեցա պապիկիս ավելի բարկացնել։

— Լավ էր, որ դու սեղմել էիր նաև չորրորդ կոճակը, — կրկին ասաց նա, — թե չէ անձրևի տարափը կտեղար միայն դաշտերի վրա։ Չորրորդ կոճակի շնորհիվ անձրև էր գալիս նաև գյուղում։ Նկատելով այդ, ես վազեցի ուղղաթիռների կայանը և ամբողջ ձայնով գոչեցի.

— Շո՛ւտ, դեպի Ջրաբաշխիչ կայա՛ն, թոռնիկս չարություն է արել։

# ՌՈՐԻՆ ու ԹՈԹՈՆ

Ռորին չէր կարողանում մռնչալ։ Նա փորձեց կրկին ու կրկին, բայց կարողացավ կատվի ձագի պես հազիվ «մխաու» անել։ Դրա համար էլ շատ էր տխրում։

Նա ցանկանում էր մռնչալ ու մեծ աղմուկ հանել։

«Չէ՞ որ ես առյուծի զորեղ կորյուն եմ, ախ, ինչու՞, ինչու՞ չեմ կարողանում մռընչալ» — լաց էր լինում նա, և արցունքի մեծ-մեծ կաթիլները ցած էին գլորվում։

— Ի՞նչն է պատճառը, որ լաց ես լինում,— հարցրեց մի փոքրիկ մկնիկ։— Ես կարողանում եմ միայն ծվծվալ, բայց դրա համար լաց չեմ լինում։

—Այդ բավական է քեզ համար, — հեկեկաց Ռորին։— Դու միայն մի փոքրիկ մկնիկ ես և ոչ թե ինձ պես առյուծի կորյուն։

Եվ նա սկսեց դարձյալ մռնչալ. «Մխաու, մխաու»։ Անօգուտ էր։ Ռորին իրոք շատ փոքրիկ էր մռնչալու համար։ Բայց նա, պարզապես, չէր կարող համբերել, մինչև մեծանա։

Ռորիի մայրը շատ էր մտածում իր որդու մասին։ Ռորին էլ չէր խաղում։ Նրա միակ ցանկությունն էր մռնչալ հոր նրման, և նա շարունակ փորձում էր մռընչալ։

Մյուս բոլոր կենդանիներն էլ ցավակցում էին Ռորիին։ Փորձեցին համոզել, թե երբ նա մեծանա ու առյուծ դառնա, կարող է բոլորից ուժեղ մռնչալ։

—Ես հիմա եմ ուզում մռնչալ, — ասաց Ռորին և գնաց ջունգլի, դարձյալ փորձելու համար։

Կենդանիները տխուր շարժեցին իրենց գլուխները։

— Պետք է փոքրիկին օգնել, — ասացին նրանք։

Բայց որքան էլ մտածեցին, չկարողացան որևէ բանով օգնել։

Մի կապույտ թռչնակ ասաց, որ ինքը պիտի գնա Թոթոյին հարցնի, թե ինչ պետք է անել։ Ռորին սիրում էր Թոթոյին։ Նրանք միշտ խաղում էին միասին, և Թոթոն էր տվել այն կապույտ, գեղեցիկ ժապավենը, որ Ռորին կապել էր վզին։

— Թոթո,—կբարեհաճեի՞ք,— ասաց կապույտ թռչնակը, — գալ և Ռորիի հետ խաղալ։

— Իհարկե,— ասաց Թոթոն, — խկույն կգամ։

Նա վազեց իրենց փոքրիկ խրճիթը՝ մորից թույլտվություն վերցնելու։ Մայրը մի քանի հատ համեղ կարկանդակներ տվեց, որ նա տանի Ռորիին։

Մինչ նրանք շտապով գնում էին ջունգլիի միջով, կապույտ թռչնակը Թոթոյին պատմեց, որ իրենք բոլորն էլ շատ են մտահոգված Ռորիի հարցով։ Ռորիին այնքան տխուր տեսնելը նրանց համար անտանելի բան էր։

— Եթե ես նրա հետ խաղամ, գուցե նա դարձյալ ուրախանա, — ասաց Թոթոն։

— Ես վստահ եմ, որ նա պիտի ուրախանա, — հաստատեց կապույտ թռչնակը։

Ռոբին շատ ուրախացավ Թոթոյին տեսնելով: Նա բոլորովին մոռացավ իր մռնչալու ցանկությունը: Խաղում էին ուրախ և վազվզում մի մեծ ծառի տակ: Այնքան խաղացին, մինչև որ հոգնեցին ու սովածացան:

Նրանք մի քիչ կարկանդակ կերան, ապա Թոթոն ասաց.

— Արի ձուկ որսալու գնանք:

Եվ նրանք Թոթոյի նավակով սահում էին գետի վրայով: Թոթոն նավակն էր թիավարում, իսկ Ռոբին մեծ հաճույքով ձկներ էր որսում: Դա մի հիանալի նոր զվարճություն էր:

Մի մեծ ձուկ ջրից դուրս նետվեց և, երբ Ռոբին փորձեց բռնել այն, ճը՛մփ, նրանք երկուսն էլ ընկան գետը և խորասուզվեցին ջրի մեջ, իսկ նավակը քշվեց հոսանքով վար:



Գետը շատ խորն էր. Ռոբին սուզվում էր ջրի հատակը:

— Զգուշացե՛ք, — բացականչեց մի ձուկ բարկությամբ, — այս գետը օրըստօրե ավելի է վարարում, — և մեծ-մեծ պղպջակներ հանելով՝ լողաց հեռու:

— Երանի ես էլ նրա նման կարողանայի լող տալ, — մտածեց Ռոբին ու քացի տալով ջրի երեսը բարձրացավ:

Ջրի վրա մի քիչ չարչարվելով՝ Ռոբին զարմանքով տեսավ, որ ինքը կարողանում է բավական լավ լողալ: Թոթոն մոտեցավ նրան:

— Իմ պոչից բռնիր, — գրնդուն ձայնով ասաց նա Ռոբիին:

Ռոբին պինդ բռնեց նրա պոչից, և շուտով նրանք հասան ցամաք:



Հևասպառ ու հոգնած, նրանք նստեցին խոտի վրա, որ մի քիչ հանգստանան: Արևը պայծառ փայլում էր, և շատ շոգ էր: Նրանք ելան ու սկսեցին վազվզել, որ իրենց թաց մարմինը չորացնեն:

Նրանք եռանդով վազում էին, ավելի ու ավելի խորանալով ջունգլիի մեջ, ուր ծառերն ավելի մեծ էին ու բարձր: Վերջապես նրանք կանգնեցին:

— Օ՜հ, սիրելի Ռոբի, — ասաց Թոթոն, — ես կարծում եմ, որ մենք անտառում կորել ենք:

Նրանք սկսեցին թափառել այս ու այն կողմ, բայց ոչ մի ճամփա չգտան: Այստեղ Ռոբին մի միտք հղացավ: Ա՜խ, եթե կարողանար մռնչալ, վստահ էր, որ իր բարեկամները կլսեին ու օգնության կհասնեին:

Նա խորը շունչ քաշեց և փորձեց մռնչալ: Հրաշալի էր, նույնիսկ ինքը զարմացավ, որովհետև շատ ուժեղ մռնչյուն լսվեց: Շատ հեռվում կենդանիները մի պահ կանգ առան և ականջ արին:





— Աստված իմ, այդ Ռոբի՞ն է, — հարցրեց փիղը։

— Նա երևի կորել է անտառում, — ասաց ընձուղտը, — գնանք նրան փնտրելու։ Իհարկե, նա այժմ կարող է ավելի բարձր մռնչալ։

Այսպես, փիղն ու ընձուղտը և Ռոբիի մյուս բոլոր բարեկամները համփա ընկան Ռոբիին փնտրելու։

Նրանք երկար փնտրեցին և, քանի որ Ռոբին հետզհետե ավելի ու ավելի ուժեղ էր մռնչում, վերջապես գտան Ռոբիին ու Թոթոյին։

— Կեցցե՛ս, ձեզ գտանք վերջապես։ Ուսիս բարձրացեք, — ասաց փիղը, — շուտով ձեզ տուն կհասցնենք։



Եվ կենդանիների անագին խմբի հետ, փղի ուսին նստած՝ Ռոբին տուն վերադարձավ հպարտ ու երջանիկ։

Նա ուրախ բացականչում էր.

— Այժմ ես կարող եմ մռնչա՜լ, ես կարող եմ մռնչա՜լ. վերջապես գտա, թե ինչպես են մռնչում։

Անգլերենից թարգմ. Վ. ԳԱԼՍՏՅԱՆ

# ՊՃՆԱՍԵՐ ԼԱԼԻԿ

Հ. ՄՈՒՐԱԴՅԱՆ

Քունն է տանում Լալիկի,
Մեր պճնասեր բալիկի,
Բայց նա ինչո՞ւ է լալիս,
Այդ ինչի՞ է ման գալիս,
Խաղալիքներն է խառնում
Ու գրքերը շուռ տալիս։

— Ի՞նչ ես ուզում դու կրկին, —
Մայրն է հարցնում Լալիկին։
— Ժապավենս կորել է,
Էլի փիսոն տարել է.
Եթե հանկարծ չգտնեմ,
Ինչպե՞ս՝ պիտի ես քնեմ։
Իսկ թե հանկարծ երազում
Ես հյուր գնամ տատիկի՞ն
Կամ թե ծնունդը լինի
Մեր հարևան Սաթիկի՞...
— Հանգստացիր, ի՛մ Լալիկ, —
Մայրն է նրան փաղաքշում, —
Դու հո մենակ չե՞ս լինի,
Երբ հյուր գնաս երազում։
Ես էլ այնտեղ կլինեմ,
Մազերդ կհարդարեմ,
Ժապավենդ կկապեմ,
Քեզ մի լավ կզարդարեմ...

# ՆԿԱՐՈՒՄ ԵՆ ՄԱՆՈՒԿՆԵՐԸ



ԾԱՌ
ԴՈՐԱՆՋՅԱՆ ԱՆԱՀԻՏ
(Երևան, 7 տարեկան)






ՈՒՐԱԽ ՕՐ
ՀԱԿՈԲՅԱՆ ՄԱՐԻՆԵ
(Երևան, 6 տարեկան)

# Մեր օրացույցը

60 տարի



## ԳԵՂԱՄ ՍԱՐՅԱՆ

Թավրիզի երկար ու փոշոտ փողոցները երիզող, տափակ կտուրներով հողաշեն տնակների, խանութների առջևով քայլում էր մի պատանի։

Նրա երազկոտ հայացքից չէին վրիպում ո՛չ փողոցի կեղտերի միջից մրգերի մնացորդները իրար ձեռքից փախցնող կիսամերկ երեխաները, ո՛չ թեյատների պատերի տակ, ծխի անթափանց մշուշի մեջ ծալապատիկ նստած հաշիշամոլները, որոնք փոքրիկ կրակակալները առջևները դրած, արնակալած աչքերով, երազային ցնորքների աշխարհում ծխում էին այդ ահավոր թույնը, որը ժամանակավորապես մոռացնում էր չարքաշ ու տաժանելի իրականությունը, ո՛չ էլ գլխի վրա դրած ծանր բեռան տակ տնքացող շրջիկ մրգավաճառների երգախառը գովեստների մրցակցությունը։ Եվ, իհարկե, այդ բոլորից առավել, նրա միտքը զբաղեցնում էին շարժվող սև առարկաները, այո, ամբողջովին սև, սև չադրայի մեջ փաթաթված նրբագեղ հոգիները, այդ արևոտ երկրի արևի կարոտ պարսկուհիները։

Պատանին շատ խորն էր զգում այդ չարքաշ կյանքի ծանր վիճակը; չէ՞ որ վաղուց, դեռ մանուկ օրից ինքն էլ էր ճաշակել այդ դառնությունը. «Չէ՞ որ ես էլ դեռ պատանեկության տարիներից սովորելու հետ միասին կատարում էի վարձու աշխատանք, որպեսզի որևէ կերպ թեթևացնեմ մեր բազմանդամ ընտանիքի ծանր կարիքները»— գրում է ինքը՝ Գեղամ Սարյանը։

1920 թվականին ավարտելով Թավրիզի թեմական դպրոցը և ստանալով ուսուցչի կոչում, տասնութամյա պատանին աշխատում է տարբեր քաղաքներում ու հայաբնակ գյուղերում։ Եվ որքան ավելի խորն է մըտնում ժողովրդի մեջ, այնքան ավելի է զգում նրա թշվառությունը։ Նրան հուզում է հատկապես երեխաների վիճակը. «Կարելի՞ է միթե չվշտանալ, երբ տեսնում ես, որ հարյուրավոր 10—12 տարեկան երեխաներ, իրենց մանկական խաղերը մոռացած, ծալապատիկ նստած դազգահների առաջ, գորգեր են հյուսում լուսաբացից մինչև երեկո։ Ինչպե՞ս չվշտանալ, երբ տեսնում ես, որ նրանք երկար նստելուց չեն կարողանում քայլել, երբ լսում ես նրանց երգերը, որոնք աղիողորմ հեկեկանքի պես են հնչում ականջիդ»։

Ստեղծագործական առաջին փորձերը Սարյանը կատարում էր դեռ աշակերտական սեղանին, բայց այդ պայմաններում իր ստեղծագործական մտքի համար նա ոչ մի հեռանկար չէր սպասում։ Նա իր փրկությունը տեսնում էր Պարսկաստանից հեռանալու մեջ։

Եվ ահա 1922 թվականին գալով Հայաստան, տեսնում է իր ժողովրդի բազմադարյան կուլտուրայի վերածնունդը, տեսնում է նորաստեղծ Հայաստանի լուսաբացը, կյանքի ու մահվան ուժեղ հակադրությունը։ Ինքն էլ տոգորված նոր եռանդով ու շնչով՝ գրում է «Շիրակի հարսանիքը» և «Յունկերսի խորտակումը» պոեմները։

1926 թվականին, գրական մի մեծ երեկույթում Սարյանը ձեռագրից կարդում է իր նոր գրած «Գյուլխանդա» բալլադը, որի ջերմ ընդունելությունը հասարակության կողմից վճռական դեր է խաղում Սարյանի կյանքում։ Այնուհետև հեղինակի գրչի տակից կյանք են ստանում նրա գողտրիկ բանաստեղծությունները, նշանավոր բալլադներն ու պոեմները։

Ո՞ւմ չի հուզել, ո՞ր դպրոցականը չի արտասանել հանճարեղ «Գյուլնարան»։

«Է՜յ, խանի՛ երկիր, թաջիրի՛ երկիր,
Գյուլնարի պես վարդ Շիրազում չկար»...

Կամ դպրոցական ո՞ր բեմահարթակից չի հնչել.

Հազար շեփոր հնչե՛ն թող
Այս առավոտ,
Հազար թմբուկ խփե՛ն թող
Այս առավոտ։

Սարյանի գրչին պատկանող՝ մեր հույզերն ու խոհերը, կյանքըն ու առօրյան պատկերող ստեղծագործությունների թիվը չափազանց շատ է։ Դրանք ջերմորեն ընդունվել են ոչ միայն մեր ժողովրդի կողմից, այլև թարգմանվել բազմաթիվ այլ լեզուներով։

Հայ գրականության մատուցած ծառայությունների համար Գեղամ Սարյանը բազմիցս արժանացել է կառավարական պարգևների, իսկ վերջերս ժողովուրդը մեծ սիրով նրան ընտրեց Սովետական Միության Գերագույն Սովետի դեպուտատ։

Լրացավ սիրելի բանաստեղծի 60 տարին։

Ա. ՍԱՀԱԿՅԱՆ

20 կ.

# ԼՔՎԱԾ ԲՆԵՐ

ՎԻԿՏՈՐ ԿՈՉԵՎՍԿԻ



Պուրակում սուլում է ցուրտ քամին տխուր,
Ծոնելով ճյուղերին բները թափուր,
Իսկ ով բույն հյուսելիս իր սերն էր տվել,
Թռել է անտառից ու վաղուց չվել։

Թռել են գնացել թռչնակներս անգին՝
Սոխակներն իմ քնքուշ ու սարյակներն իմ,
Ու պոկված տերևը հողմահար՝ մուժում
Խինդով լի երգերն է լոկ նրանց հիշում։

Սոխակի բազմահոգս օրերից մնաց
Զոր խոտի ծեղիկներ, փետուրներ պաղած.
Այն պահից, ինչ աղմուկ էլ չկա բնում,
Նրանց մոտ կարոտով հաճախ եմ գնում։

Մասրենու և մոշի թփերում թաքուն
Կածաններ էի ես գաղտնաբար սարքում.
Տեսնելով թռչնակին իր բույնը հյուսող,
Իմ սիրտը պատում էր քնքշագին մի դող։

Ու չէին նեղանում թռչուններն ինձնից,
Ես երբեք ոչ մեկին չեմ քշել բնից.
Սոխակներն ինձ հաճախ, ճախրելով դեպ վեր,
Հղել են վաղորդյան ողջյուններ ու սեր։

Ձեռք չեմ տա բներին...

գարնանը կրկին

Կլցվեն աղմուկով բերկրալից երգի.
Ես աշնան հողմերին ու բքին ձմռան
Կպահեմ, որ նորից թռչնակներն իմ գան։

Թարգմ. Գ. ՎԻՐԱՊՅԱՆ

Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

